# «Ողբերգություն Օթելլոյի, վենետիկյան մավրի մասին»

## “The Tragedy of Othello, the Moor of Venice”

Ուիլյամ Շեքսպիրի

[1603]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եազյանի [1978]*

“I kissed thee ere I killed thee—no way but this, killing myself to die upon a kiss.”

## DRAMATIS PERSONÆ

DUKE of Venice.
BRABANTIO, a Senator of Venice and Desdemona's father.
Various Deadbeat Senators.
GRATIANO, Brother of Brabantio.
LODOVICO, Kin of Brabantio.
OTHELLO, the noble Moor in the service of Venice.
CASSIO, his Lieutenant.
IAGO, his Ancient.
MONTANO, Othello's predecessor in the government of Cyprus.
RODERIGO, a Venetian Gentleman.
JOKER, Servant of Othello.
DESDEMONA, Daughter of Brabantio and wife of Othello.
EMILIA, Wife of Iago.
BIANCA, Mistress of Cassio.
Officers, Gentlemen, Messenger, Musicians, Herald, Sailor, Attendants, &c.

]0[



## ACT I. SCENE I.

Venice. A street. Roderigo and Iago enter.

### RODERIGO.

Սու՛ս, Էլ մի՛ խօսիր. խիստ վշտացած եմ, Որ հԷնց դու, Եագո, որ իմ քսակը միշտ գործ ես ածել, Որպէս թէ տէրը ինքդ լինէիր, Այդ բանի մասին լուր ես ունեցել։

### IAGO.

Դժ։ ժո՛խք, չե՛ս լսում, Թէ այդպիսի բան երազովս անգամ անցկացած լինի, Գարշիր ինձանից։

### RODERIGO.

Ինձ միշտ ասել ես՝ ատում ես նրան։

### IAGO.

Արհամարհիր ինձ, թէ ճիշտ չլինի։ Այս քաղաքացի երեք մեծ մարդիկ անձամբ դիմում են Եւ գլխարկ հանած՝ խնդրում են, որ նա իրեն տեղակալ Նշանակի ինձ, եւ, ես իմ հոգի՛ն, գիտեմ իմ գինը. Ու՛կ արժանի եմ հէնց այդ պաշտօնին։ Բայց նա, պինդ փարած իր գոռոզութեանն ու դիտումներին. Մի փքուած ճառով, սաստիկ խճողուած ռազմի ոճերով Փախուստ է տալիս եւ, ի վերջ բանի, Ուղիղ մերժում է բարեխօսներիս։ «Որաւ՛, ասում է, ընտրել եմ արդէն իմ տեղակալը»։ Եւ ի՞նչ մարդ է դա։ Այո՛, ճշմարի՛տ, մի մեծ թուաբան, Միքայէլ Կասսիո անունով մէկը, մի ֆլորենտիացի, Որ քիչ է մնացել հոգին էլ ծախի մի սիրուն կնոջ, Որ երբեք մի վաշտ չի տարել դաշտը Եւ պատերազմի բաժանումներից այնքան բան գիտէ, Որքան մի աղջիկ՝ միայն գրքերից ուսած թէօրիա՛յ, Մի բան, որի վրայ պատմուճանաւոր սենատորները Նոյնչափ հմտութեամբ կարող են ճառել։ Դատա՛րկ խօսք միայն, գործնական ոչինչ։ Ահա իր բոլոր զինուորութիւնը։ Եւ սակայն, պարոն, նա՛ նշանակուեց. Այնինչ ես, որի տուած փորձերին Թէ՛ Հռոդոսի մէջ, թէ՛ Կիպրոսի մէջ, Թէ՛ այլ դաշտերում՝ հեթանոսական եւ քրիստոնէական, Ինքն ականատես վկայ է եղել, պէտք է տեղի տամ, Պէտք է ետ քաշուեմ այդ «պարտ ու պահանջ» գրողի առաջ, Մի որեւիցէ համրիչ ձգողի։ Նա առօք-փառօք տեղակալ դառնայ, Այնինչ ես, աստուած չար աչքից պահի՛, Մնամ դրօշակիր նորին մաւրութեան։

### RODERIGO.

Երկինքը՛ վկայ, ես նրա դահիճը՛ կը դառնայի։

### IAGO.

Հա՛, բայց ճար չկայ, եւ ծառայութեան պատուհասն է այդ. Առաջացումը միշտ ձեռք է բերւում յանձնարարութեամբ Կամ թէ շնորհով, ոչ թէ հին կարգով, Երբ ամէն երկրորդ ժառանգ էր կանգնած ամէն առաջնի։ Այժմ, ինքդ դատիր, տեղիք ունե՞մ ես մաւրին սիրելու։

### RODERIGO.

Ինչո՞ւ ես ապա նրա մօտ կենում։

IAGO.

Հը՛, միամիտ կաց. Կենում եմ միայն, որ նրա գլխին իմ խաղը խաղամ։ Ամէնքս էլ հոյ տէր չե՞նք կարող լինել, Ոչ էլ ամէն տէր պարկեշտ ծառաներ միայն կ'ունենայ։ Շատ պարտաճանաչ ծունկ ծռող ծառայ տեսած կը լինես, Որ սիրահարուած ինքն իր փաղաքուշ ստրկութեանը՝ Կեանքը մաշում է, հէնց ճիշտ իր տիրոջ աւանակի պէս, Լոկ կերի համար, եւ երբ ծերանում, դուրս է վռնդւում։ Մտրակե՛լ պէտք է այդ տեսակ պարկեշտ ծառայողներին։ Բայց կան ուրիշներ, որոնք պաճուճուած Հաւատարմութեան տեսք ու ձեւերով՝ Սրտով իրենց են միայն նուիրուած Եւ ծառայութեան ցոյցեր նետելով տէրերի առաջ՝ Նրանց մօտ աճում եւ ուռճանում են Եւ իրենց հալաւն աստառելուց ետ Իրենք իրենց են հարկատու դառնում։ Դրանք են ահա, որ աւիւն ունեն։ Ես էլ դրանցից համարում եմ ինձ։ Եւ իրաւ, պարոն, ինչպէս որ ճիշտ է, որ Ռոդրիգոն ես դու, Նոյնպէս էլ ճիշտ է, որ եթէ ինքս մաւրը լինէի, Չէի յօժարուի Եագո լինելու։ Նրան ծառայելով՝ ինձ եմ ծառայում, Երկինքը՛ վկայ, ո՛չ սիրուց, ո՛չ էլ պարտազգացումից, Այլ միայն դրսից այդպէս թուալով՝ լոկ շահիս համար։ Եթէ արտաքին վարք ու արարքս, դրսի ձեւերս Հոգուս բնական ունակութիւնը եւ դէմքը ցոյց տան, Ուրեմն սպասիր, որ շուտով սիրտս ափիս վրայ պահեմ, Որ ճայերն ուտեն։ Այն չեմ, ինչ որ կամ։

RODERIGO.

Ի՛նչ բախտ կ'ունենայ այդ հաստաշուրթը, եթէ յաջողի։

IAGO.

Գնա, դուրս կանչիր աղջկայ հօրը, զարթեցրու քնից Եւ յետոյ ընկիր մաւրի ետեւից։ Լեղի դարձրու նրա բերկրանքը, Խայտառակ արա փողոցների մէջ, Գրգռիր աղջկայ ազգականներին, Թէեւ շատ ախորժ մի կլիմայի մէջ ապրում է նա այժմ, Գոնէ ճանճերով չարչարիր նրան։ Թէեւ հրճուանք է նրա հրճուանքը, Այնքան նեղացրու խանգարումներով, որ համը դուրս գայ։

RODERIGO.

Այս է հօր տունը, բարձրաձայն կանչեմ։

IAGO.

Այո՛, այնպիսի սարսափի շեշտով եւ ահագոչով, Ինչպէս ճչում են, երբ որ գիշերանց եւ անհոգութեամբ Հրդեհ է ընկնում մեծ քաղաքներում։

RODERIGO.

Էհէ՜յ, Բրաբանցիո՛, սինեօր Բրաբանցիո՛։

IAGO.

Զարթնիր, Բրաբանցիո՛, էհէ՜յ, գո՛ղ, գո՛ղ, գո՛ղ։ Մտիկ տուր տանդ եւ աղջկանդ, եւ քսակներիդ։ Գո՛ղ, գո՛ղ է եկել։

[Brabantio appears above at a window.]

BRABANTIO.
Այդ ի՞նչ սոսկալի գոռում-գոչիւն է։ Ի՞նչ է պատահել։

RODERIGO.
Սինեօր, ձեր բոլոր տնեցիք տա՞նն են։

IAGO.
Փա՞կ են դռներդ։

BRABANTIO.
Վա՛հ, ի՞նչ ասել է, ինչո՞ւ էք հարցնում։

IAGO.
Բա՛հ, սինեօր, գողեր մտել են տունդ. Ամօթ քեզ, վեր կաց, վերարկուդ հագիր, Սիրտդ պատռել են եւ հոգուդ կէսը առել տարել են։ Հիմա, հէնց հիմա, հէնց այս րոպէիս մի սեւ պառաւ խոյ Ցատկել է ճերմակ գառնուկիդ վրայ։ Վե՛ր կաց, մարդ, վե՛ր կաց, Իսկոյն խռռացող քաղաքացիներին զարթեցրու զանգով. Թէ ոչ՝ սատանան քեզ պապ կը դարձնի։ Վե՛ր կաց, ասում եմ։

BRABANTIO.
Գժուե՞լ էք, ի՞նչ է։

RODERIGO.
Յարգելի՛ սինեօր, ճանաչո՛ւմ էք ձայնս։

BRABANTIO.
Ո՛չ. ո՞վ ես։

RODERIGO.
Ես Ռոդրիգոն եմ։

BRABANTIO.
Չլինե՛ս բարով։ Քեզ չե՞մ պատուիրել, որ չդեգերես իմ դռան շուրջը. Չե՞մ ասել քեզ պարզ եւ պարկեշտօրէն, Թէ իմ աղջիկը քո պատառը չէ։ Իսկ դու, կատաղած, Եւ կերուխումից ու թունդ խմիչքից խելքդ կորցրած, Անզգամութեամբ եկել ես, որ ինձ անհանգի՞ստ անես։

RODERIGO.
Սինեօ՛ր, սինեօ՛ր, սինեօ՛ր։

BRABANTIO.
Բայց լաւ իմացիր, Ոգիս ու դիրքս այնքան ուժ ունեն, որ այս բոլորը Քթիցդ հանեն։

RODERIGO.
Բայց համբերութիւն, բարեսի՛րտ սինեօր։

BRABANTIO.
Ի՞նչ ես դուրս տալիս գողութեան մասին. Սա Վենետիկն է, տունս ագարակ չէ։

RODERIGO.
Յարգելի՛ Բրաբանցիո, Պարզ, մաքուր սրտով եկել եմ ձեզ մօտ։

IAGO.
Բա՛հ, մարդ աստծոյ, երեւի դուք էլ այն մարդկանցից էք, որ եթէ սատանան նրանց ասի, որ Աստծուն պաշտեն, հէնց դրա համար չեն պաշտի։ Մենք եկել ենք այստեղ ձեզ ծառայութիւն անելու, իսկ դուք մեզ սրիկաների տեղ էք դնում։ Թոյլ էք տալիս, որ մի արաբական ձի ցատկի ձեր աղջկայ վրայ. երեւի խրխնջացող սերունդ էք ցանկանում, նժոյգներ եւ մատակներ էք ուզում իբրեւ թոռ ու ծոռ։

BRABANTIO.
Ին՛չ լիրբ անզգամն ես դու։

IAGO.
Ես մի մարդ եմ, պարոն, որ եկել եմ ձեզ ասելու, թէ այս րոպէիս ձեր աղջիկը եւ մաւրը մի երկումէջքանի անասուն են կազմել։

BRABANTIO.
Ին՛չ անամօթն ես։

IAGO.
Դուք սենատոր էք։

BRABANTIO.
Դու սրա համար պատասխան կը տաս։ Ճանաչեցի քեզ, Ռոդրիգո։

RODERIGO.
Շատ լաւ, պատրաստ եմ պատասխան տալու։ Բայց աղաչում եմ, նախ ինձ ա՛յն ասէք, Արդեօք ձեր կամքո՞վ եւ ձեր իմաստուն հաւանութեա՞մբ է, Ինչպէս մասամբ էլ այդպէս է թւում, որ ձեր աղջիկը Գիշերուայ կէսին, այս մեռելային անպատեհ ժամին, Մի պարզ վարձկանի, մի նաւավարի

հսկողութեան տակ՝ Գնացել ընկել է մի վաւաշ մաւրի բիրտ ճանկերի մէջ։ Եթէ տեղեակ էք եւ թոյլ էք տուել, Ապա իսկապէս մենք ձեր դէմ յանդուգն ու բիրտ ենք վարուել։ Բայց թէ անգէտ էք, բարեկրթութեան ամէն կանոնով Դուք իզուր էք մեզ այսպէս անպատւում։ Մի՛ կարծէք, թէ ես, Մարդավարութեան ամէն զգացում ոտնակոխ արած, Եկել եմ այստեղ ձեր յարգութեան հետ կատակ անելու։ Այո՛, ձեր դուստրը, եթէ ինքներդ հրաման չէք տուել, Ասում եմ նորից, սաստիկ անվայել մի գործ է արել՝ Զոհելով այսպէս պարտականութիւն, բախտ, գեղեցկութիւն Մի թափառական եւ մշտապտոյտ օտարականի, Որ այսօր այստեղ, վաղն ամէն տեղ է։ Գնացէք, տեսէք, Եթէ ձեր աղջիկն իր սենեակումն է կամ թէ տան մէջն է, Ապա պետութեան արդարութեանը յանձնեցէք դուք ինձ, Որ ուզեցել եմ ձեզ այսպէս խաբել։

BRABANTIO.
Կայծքար զարկեցէք, Հէ՜յ, մի մոմ տուէք, վե՜ր կ'ացրէք բոլոր տնեցիներիս. Այս պատահարը գրեթէ նման է տեսած երազիս. Հաւատալս արդէն ճնշում է հոգիս։ Հէ՜յ, ճրա՜գ, տղերք։ Ճրա՜գ, ասում եմ։

[Exits from above.]

IAGO.
Լաւ. մնաս բարով. պէտք է հեռանամ։ Անյարմար բան է, նոյնիսկ վնասակար՝ պաշտօնիս համար, Որ մաւրի ընդդէմ ինձ վկայ կանչեն, եւ եթէ մնամ, Անշուշտ կը կանչեն։ Ինձ քաջ յայտնի է, որ պետութիւնը Թէպէտեւ մաւրին այս բանի մասին մի քիչ կը սաստի, Սակայն չի կարող նրան վռնդել, Եւ այս նոր ծագած կիպրեան կռուի մէջ Նա այն աստիճան անհրաժեշտ մարդ է, որ, կրակն էլ ընկնեն, Այն չափի մէկը չեն կարող գտնել, որ գործը վարի։ Այս պատճառով է, որ թէեւ նրան այնպէս ատում եմ, Ինչպէս դժոխքի չարչարանքները, Սակայն ներկայի հարկից ստիպուած՝ Պէտք է որ սիրոյ դրօշակ ու նշան ցուցադրեմ առայժմ, Ինչ որ ցոյց է լոկ։ Որպէսզի նրան անվրէպ հանդիպես, Տար ոտքի կանգնած խուզարկուներին Աղեղնաւորը, Ես էլ նրա հետ այնտեղ կը լինեմ։ Դեհ, մնաս բարով։

[As Iago exits Brabantio enters with Servants and torches.]

BRABANTIO.
Շա՜տ ճիշտ է եղել անբախտութիւնս, այո՛, գնացել է, Եւ ինչ մնում է իմ անպէտք կեանքից՝ դառնութիւն է լոկ։ Ասա, Ռոդրիգո, ո՞ւր տեսար նրան։ Օ՜, անբա՜խտ աղջիկ, մաւրի՞ հետ տեսար։ Ո՜վ այսուհետեւ կ'ուզէ հայր լինել... Ինչպէ՞ս իմացար, որ նա էր։ Վա՜յ ինձ, այնպէ՜ս խաբեց ինձ, Որ խելքից դուրս է։ Ի՞նչ ասաց նա քեզ։ Էլի ճրագնե՜ր, զարթեցրէք բոլոր ազգականներիս։ Ամուսնացե՞լ են, կարծում ես։

RODERIGO.
Այո՛, այդպէս եմ կարծում։

BRABANTIO.
Ողորմա՜ծ երկինք, ինչպէ՞ս դուրս գնաց։ Դաւաճան արիւն։ Հայրե՜ր, այսուհետ չվստահանաք ձեր

աղջիկներին՝ Դատելով նրանց արտաքին ձեւից։ Չէ՞ որ, Ռոդրիգո, կախարդութիւն կայ, Որով կուսութեան եւ անմեղութեան բուն իսկ բնոյթը Եղծուել է կարող։ Չե՞ս կարդացել այդ։

RODERIGO.
Այո, տէ՛ր, ճիշտ է։

BRABANTIO.
Եղբօրս էլ կանչէք։ Երանի թէ քեզ տուած լինէի. Թող ձեզնից ոմանք մէկ կողմից գնան, ոմանք՝ միւս կողմից։ Գիտե՞ս, թէ որտեղ կարող ենք բռնել նրան եւ մաւրին։

RODERIGO.
Կարծեմ թէ մաւրին կարող եմ գտնել, թէ բարեհաճէք Բաւական մարդիկ վեր առնել ձեզ հետ եւ ինձ հետեւել։

BRABANTIO.
Դու առաջ անցիր։ Ամէն տան առաջ ձայն կը տամ հիմա, Նոյնիսկ շատերին ես հրամայելու իրաւունք ունեմ։ Զէնք առէք, էհէ՛յ. եւ գիշերապահի մի քանի սպայ վեր առէք ձեզ հետ։ Հայդէ՛, Ռոդրիգո. քո նեղութիւնը կը փոխարինեմ։

[All exit.]

][][

ACT I. SCENE II.
Venice. Another street. Othello, Iago and Attendants enter with torches.

IAGO.
Ռազմի արհեստում մարդ սպանել եմ, Բայց համարում եմ, թէ խղճի բուն իսկ էութեան դէմ է Կանխամտածուած սպանութիւնը։ Չարութիւն չունեմ, որ ինձ երբեմն օգտակար լինի։ Ինը-տասն անգամ քիչ էր մնացել սուրս խոթէի Նրա այստեղը՝ թուլակուշտի մէջ։

OTHELLO.
Լաւ է, որ չարիր։

IAGO.
Վա՛հ, բայց նա այնպէս մեծ-մեծ էր խօսում, Լիրբ ու գրգռիչ բաներ էր ասում ձեր յարգութեան դէմ, Որ իմ սակաւիկ աստուածվախութեամբ Հազիւ կարացի ինքս ինձ զսպել։ Բայց խնդրեմ, տէր իմ, Արդեօք պինդ ու պիրկ ամուսնացա՞ծ էք։ Հաստատ իմացէք, այդ Մագնիֆիկոն շատ սիրուած մարդ է, Եւ նրա ձայնը իր ազդեցութեամբ նոյնչափ զօրեղ է, Որչափ դուքսինը։ Նա ձեզ իրարից բաժանել կը տայ Կամ

այնքան արգելք եւ գլխացաւանք կը սարքէ ձեր դէմ, Որքան օրէնքը, հետն էլ իր բոլոր կարողութիւնը Նրան թոյլ կը տան։

OTHELLO.
Թող ուզածն անի։ Պետութեանն արած ծառայութիւններս Նրա գանգատի ձայնը կը խեղդեն։ Դեռեւս անյայտ է, Բայց երբ գիտենամ, թէ պարծենալը պատիւ է բերում, Անշուշտ կը յայտնեմ, որ ես էլ կեանքս եւ գոյութիւնս Պարտ եմ գահանիստ նախահայրերի, եւ արժանիքներս իրաւունք ունեն խիզախ յաւակնել Այն բարձր դիրքին, որին հասել եմ։ Իմացիր, Եագո, եթէ անուշիկ Դէզդեմոնայի սէրը չլինէր, Չէի յօժարուի պարփակել անտուն եւ ազատ կեանքս Որեւէ եզրով կամ շրջապատով, Թէկուզ ծովերի բոլոր գանձերը ինձ պարգեւ տային։ Բայց նայիր, սրանք ի՞նչ ճրագներ են, որ մեզ են գալիս։

IAGO.
Հայրը կը լինի, որ վեր է կացել, եւ բարեկամներ։ Լաւ է՝ ներս գնաք։

OTHELLO.
Ե՞ս, ինչո՞ւ, թող գայ։ Թող արժանիքներս եւ աստիճանս եւ հանդարտ խիղճս Հանդիսացնեն ինձ այնպէս, ինչպէս կամ։ Նրա՞նք են, ի՞նչ է։

IAGO.
Ոչ, Եանոս վկա՛յ։

[Cassio and Officers enter with torches.]

OTHELLO.
Դուքսի ծառաներն ու տեղակա՛լս։ Գիշերուայ բարին ձեզ վրայ լինի, բարեկամնե՛րս, Ի՞նչ լուր էք բերում։

CASSIO.
Զօրապետ, դուքսը բարեւում է ձեզ Եւ ցանկանում է ձեր խիստ շուտափոյթ ներկայութիւնը Հէնց ա՛յս րոպէիս։

OTHELLO.
Ի՞նչ կայ, կարծում էք։

CASSIO.
Պէտք է Կիպրոսից լուր եկած լինի։ Շատ հրատապ բան է. ռազմանաւերը այս գիշեր եւեթ Տասներկու տարբեր մարդ են ուղարկել իրար ետեւից։ Սենատորներից շատերին արդէն քնից զարթեցրել եւ ժողովել են դուքսի պալատում։ Ձեզ էլ շատ սաստիկ փնտրած են եղել, Բայց չգտնելով ձեր բնակարանում՝ Սենատը երեք զանազան խմբեր ճամփայ է հանել, Որ ձեզ որոնեն։

OTHELLO.
Լաւ որ դուք գտաք։ Դե՛հ, գնամ տունը, երկու բառ ասեմ եւ կը գամ ձեզ հետ։

[Exits.]

CASSIO.
Դրօշակիր, այստեղ նա ի՞նչ է անում։

IAGO.
Հը՛մ, նա այս գիշեր մի ցամաքային նաւ է ձեռք ձգել, Եւ եթէ դատուի, որ իր գրաւումն օրինաւոր է, Բախտը բացուել է։

CASSIO.
Լաւ չհասկացայ։

IAGO.
Ամուսնացել է։

CASSIO.
Ու՞մ հետ։

[Othello enters.]

IAGO.
Ում հե՞տ։ Հայդէ՛, զօրապետ, գալի՞ս էք՝ գնանք։

OTHELLO.
Այո՛, եկ գնանք։

CASSIO.
Նոր խումբ էլ եկաւ ձեզ որոնելու։

[Brabantio, Roderigo and Officers enter with torches and weapons.]

IAGO.
Ա՛հ, Բրաբանցիոն է, զօրապետ, զգո՛յշ։ Վատ մտքեր ունի։

OTHELLO.
Էհէ՜յ, կանգ առէք։

RODERIGO.
Սինեօր, մաւրն է։

BRABANTIO.
Զարկեցէք դրան, դու գո՛ղ աւազակ։

[They draw their weapons on both sides.]

IAGO.
Դո՞ւ ես, Ռոդրիգո. եկ առաջ, պարոն, պատրաստ եմ քո դէմ։

OTHELLO.
Ետ դրէք ձեր այդ փայլուն սուրերը, Որ ցօղը դրանք չժանգոտացնի։ Յարգելի՛ սինեօր, Դուք ձեր տարիքով պէտք է հրամայէք, ոչ թէ զէնքերով։

BRABANTIO.
Ո՜վ դու անարգ գող, ո՞ւր ես թաքցրել դու իմ աղջկան, Ո՜վ դու նզովեալ, թովել ես նրան։ Հարց կ'անեմ ամէն խելք ունեցողից, Որ եթէ թովքի շղթաների մէջ կապուած չլինէր, Ինչպէ՞ս կարող էր մի քնքուշ աղջիկ, սիրուն, երջանիկ եւ ամուսնութեան այնքան հակառակ, որ խոյս էր տալիս Մեր ազգի հարուստ, գանգրահեր, սիրուած պատանիներից, Փախչել հօր տնից՝ ծաղրի առարկայ դառնալու համար, Եւ իրեն նետել քեզ պէս էակի մրոտ գրկի մէջ՝ Զարհուրանք ազդող, ոչ թէ զմայլանք։ Աշխարհն ինձ դատի՛, խիստ ակներեւ չէ՞, Որ դու գարշելի դիւթքով, հուռութքով ազդել ես վրան Եւ նրա քնքուշ անմեղութիւնը մոլորեցրել ես Հոգին թուլացնող հանքանիւթերով եւ դեղորայքով։ Պէտք է այդ մասին վիճաբանել տամ. Շատ հաւանական եւ մտքի համար շօշափելի է։ Ուրեմն բռնում եւ կապում եմ քեզ որպէս մարդախաբ, Որպէս կիրարկող չար արուեստների, որ արգելուած են։ Բռնեցէք սրան, եթէ դիմադրի, Բռնի զսպեցէք՝ ի վտանգ իր անձի։

OTHELLO.
Ձեռք մի՛ բարձրացրէք, ո՛չ դուք, իմ մարդիկ, ո՛չ էլ միւսներդ։ Եթէ իմ դերը սուր քաշել լինէր, Յուշարար պէտք չէր, որ գիտենայի։ Ու՞ր էք ուզում գամ՝ մեր մեղադրանքին պատասխան տալու։

BRABANTIO.
Բանտ, մինչեւ օրէնքն ու դատարանի կարգ ու կանոնը Քեզ ատեան կանչեն պատասխան տալու։

OTHELLO.
Եթէ հնազանդեմ, դուքսը ի՞նչ կ'ասի, Որի ծառաները կանգնած են կողքիս, Որ մի պետական մեծ

գործի համար ինձ իր մօտ տանես։

OFFICER.
Իրաւ՛ է, տէր իմ։ Դուքսը հէնց հիմա ժողով է նստել, եւ գիտեմ, որ ձեր ազնուութեանն էլ սաստիկ փնտրում են։

BRABANTIO.
Դուքսը ժողովի՞, այն էլ ա՞յս ժամին։ Տարէք այս մարդուն. Ի՛մ դատն էլ դատ է։ Թէ՛ դուքսը ինքը, թէ՛ պաշտօնակից իմ եղբայրներից իւրաքանչիւրը Այնպէս խիստ կը զգան այս նախատինքը, որպէս իրենցը։ Եթէ մենք թոյլ տանք այսպիսի գործեր անպատիժ մնան, Սպայ ստրուկներ եւ հեթանոսներ թող մեզ տէր դառնան։

[All exit.]

][][

ACT I. SCENE III.
Venice. A council chamber. The Duke and Senators all sit at a table.

DUKE.
Այս լուրերի մէջ համաձայնութիւն չկայ, որ նրանց Արժէք ընձայի։

SENATOR I.
Ճիշտ է, իրար հետ անհամեմատ են։ Այստեղ յիշուած է հարիւր եօթը նաւ։

DUKE.
Եւ իմ նամակում՝ հարիւր քառասուն։

SENATOR II.
Իսկ իմ նամակում՝ ճիշտ երկու հարիւր։ Բայց թէեւ դրանք ճշգրիտ թուի մէջ իրար չեն բռնում. Եւ այն դէպքերում, երբ միակ հիմքը ենթադրութիւնն է, Յաճախ թուերը տարբեր են լինում, սակայն բոլորն էլ Հաստատում են այն, թէ կայ թուրքական մի նաւատորմիղ, Որ արշաւում է Կիպրոսի վրայ։

DUKE.
Այո՛, բաւական խելքի մօտ է դա։ Ես էլ չեմ ուզում հանգստացնել ինձ թուի սխալով. Այլ հաւատում եմ էական կէտի ահաւորութեան։

SAILOR.
[From outside.] Հէ՛յ, հո՛յ, հէ՛յ, հոյ, հէ՛յ։

[Sailor enters.]

OFFICER.
Սուրհանդակ եկաւ ռազմանաւերից։

DUKE.
Հը՞, ի՞նչ լուր, ի՞նչ կայ։

SAILOR.
Թուրք նաւատորմը Հռոդոս է գնում։ Այս է պատուիրել սինեօր Անջելոն յայտնել պետութեան։

DUKE.
Նո՜ր փոփոխութիւն։ Սրան ի՞նչ կ'ասէք։

SENATOR I.
Կարելի բան չէ, Բանականութեան որեւէ փորձով ըմբռնելի չէ. Մի խաբկանք է դա՝ մեր ուշքը թիւր կողմ թեքելու համար։ Երբ աչքի առնենք, թէ թուրքի համար Կիպրոսը որքան կարեւոր կէտ է, եւ նորից, խորհենք, Թէ նրա համար նա ոչ թէ միայն աւելի արժէ, Բան թէ Հռոդոսը, այլեւ աւելի դիւրաւ կ'առնուի, Քանի որ այնպէս գօտեպնդուած չէ ռազմի զրահով, Այլ բոլորովին զուրկ է այն բոլոր սպառազէնքից, Որով Հռոդոսը պատսպարուած է, երբ մտածենք այս, Չենք կարող կարծել, թէ տաճիկն այնքան անյաջողակ է, Որ վերջին թողնի, ինչ որ իր համար առաջին բանն է՝ Անտես անելով հեշտ ու շահաւէտ մի ձեռնարկութիւն, Եւ դիմագրաւի անշահ վտանգի։

DUKE.
Չէ՛, կասկած չկայ. Հռոդոս չեն գնում։ Բայց ահա նոր լուր։

[Messenger enters.]

MESSENGER.
Ողորմա՛ծ տէր իմ, Օսմանցիները, ուղիղ նաւելով դէպի Հռոդոս, Այնտեղ միացան մի այլ պահեստի նաւատորմի հետ։

SENATOR I.
Տեսէ՛ք, չասացի՞։ Քանի՞, քո հաշուով։

MESSENGER.
Երեսուն։ Եւ այժմ, նոյն եկած ճամփով վերադառնալով, Պարզ արշաւում են Կիպրոսի վրայ։ Սինեօր Մոնտանոն՝ ձեր հաւատարիմ եւ արի ծառան, Խոնարհ յարգանքով յայտնում է ձեզ այս Եւ աղաչում է՝

հաւատաք նրան։

DUKE.
Պարզ է ուրեմն, Կիպրոս են գնում։ Մարկոս Լուկչիկոն Վենետի՞կ է այժմ։

SENATOR I.
Ո՛չ, Ֆլորանս է այժմ։

DUKE.
Գրիր իմ կողմից, որ շուտ, շա՛տ շուտ գայ։

SENATOR I.
Ահա Բրաբանցիոն եւ կտրիճ մաւրը։

[Brabantio, Othello, Iago, Roderigo and Officers.]

DUKE.
Կտրիճ Օթելլո, պէտք է անյապաղ ձեզ գործի դնենք Երկրի թշնամու, օսմանցու ընդդէմ։ [To Brabantio.] Ա՜հ, ձեզ տեսայ, բարով էք եկել, յարգելի սինեօր։ Այս գիշեր սաստիկ կարօտ ենք եղել ձեր խորհուրդներին Եւ աջակցութեան։

BRABANTIO.
Եւ ես էլ՝ ձերին։ Ձերդ բարձրութիւն, Ներեցէք խնդրեմ։ Ո՛չ պաշտօնս է ինձ անկողնից քաշել, Ո՛չ որեւէ լուր, որ լսած լինեմ մի գործի մասին, Ո՛չ էլ հանրութեան հոգսն է ինձ տանջում, Այլ անձնական ցաւս այնպէս ամէն թումբ յաղթահարել է, Որ նա լափում է եւ կուլ է տալիս ամէն ուրիշ ցաւ, Եւ ինքը մնում այնպէս, ինչպէս կայ։

DUKE.
Ա՛հ, ի՞նչ կայ միթէ։

BRABANTIO.
Աղջի՛կս, աղջի՛կս։

DUKE.
Մեռա՞ւ։

BRABANTIO.
Այո՛, ինձ համար։ Խաբել են նրան, ինձնից գողացել Եւ կախարդանքով, շառլատաններից գնած դեղերով Գլխից հանել են, քանզի բնութիւնը, Ո՛չ կոյր լինելով, ո՛չ պակասաւոր եւ ո՛չ խելքից կաղ, Չէր

կարող այսքան այլանդակ կերպով իր ճամփից դուրս գալ Առանց դիւթանքի։

DUKE.
Ով էլ որ լինի, որ այդ պիղծ ձեւով խլած է խելքը ձեր աղջկանից եւ նրան՝ ձեզնից, Պէտք է ինքներդ կարդաք օրէնքի արիւնոտ գիրքը Իր դաժան տառով եւ ձեր սեփական մեկնաբանութեամբ, Թէկուզ հարազատ որդիս էլ լինի ձեր դէմ մեղանչած։

BRABANTIO.
Շնորհակալ եմ ձեր բարձրութիւնից։ Ահա անողը, այս մաւրը, որին, ինչպէս լսում եմ, Յատուկ հրամանով պետական որոշ գործերի համար Կանչել էք այստեղ։

DUKE.
Եւ։

SENATORS.
Շատ ցաւալի է։

DUKE.
[To Othello.] Իսկ դուք ձեր կողմից ի՞նչ կ'ասէք սրան։

BRABANTIO.
Ոչինչ, եթէ ոչ, որ ճշմարիտ է։

OTHELLO.
Հզօր, խոհամիտ, յարգոյ, սինեօրներ, Իմ ամենաազնիւ եւ միշտ բարեհաճ իշխանաւորներ, Որ այս ծեր մարդու աղջկան տնից, առել տարել եմ, Ճիշտ է, բայց ճիշտ է, որ ես նրա հետ ամուսնացել եմ։ Յանցանքիս բոլոր դէմքն ու ճակատը այսքան է միայն, Բայց ոչ աւելի։ Կոշտ եմ խօսքի մէջ եւ խաղաղութեան փափկասուն ոճից իսպառ անբաժին։ Քանզի այն օրից, ինչ այս բազուկներս Եօթնամեայ ծուծով հիւթաւորուել են, Մինչեւ ինն ամիս սրանից առաջ նրանք վարել են Իրենց ամէնից եռանդուն գործը վրանապատ դաշտում։ Քիչ բանի մասին կարող եմ խօսել այս լայն աշխարհից, Եթէ ոչ միայն ինչ որ կապ ունի խազմ ու ռազմի հետ, Եւ այդ պատճառով դժուար թէ դատիս հրապոյր ընծայեմ՝ Ինքս լինելով իմ ջատագովը։ Բայց եթէ հաճէք համբերող լինել, Մի պարզ, անպաճոյճ պատմութիւն կ'անեմ Իմ սիրոյ բոլոր ընթացքի մասին, Թէ ի՞նչ դեղերով, ի՞նչ դիւթանքներով, Ին՞չ ոգեկոչով եւ ի՞նչ մոգական հզօր արուեստով, Ինչպէս ինձ այստեղ ամբաստանում են, Շահել եմ նրա աղջկայ սիրտը։

BRABANTIO.
Մի համեստ աղջիկ, այնքան հեզ, հանդարտ, Որ նրա հոգու ամէն մի իղձը շիկնում էր իր վրայ, Հակառակ բնութեան, տարիքի, երկրի, բարի անունի եւ ամէն բանի, գայ սիրահարուի այնպիսի մէկի,

Որին նայելուց անգամ սարսում էր։ Պակասաւոր է, հաշմ է այն խելքը, որ խոստովանի, թէ կարելի է, որ կատարեալը այսքան մոլորուի Բնութեան բոլոր կանոնների դէմ։ Մարդ ստիպուած է նենգմիտ դժոխքի արուեստների մէջ Փնտրել այս բանի բացատրութիւնը։ Պնդում եմ կրկին, թէ նա անպատճառ արեան վրայ ազդող որոշ դեղերով Կամ թէ յատկապէս դիւթուած խմիչքով գործել է վրան։

DUKE.
Այդ բանն ասելը ապացուցել չէ։ Աւելի հաստատ, ակնյայտ փաստեր պէտք են նրա դէմ, Քան թէ այդպիսի թեթեւ վարկածներ, թոյլ երեւոյթներ եւ սովորական ենթադրութիւններ։

SENATOR I.
Խօսիր, Օթելլո, Իրաւ՞ է արդեօք, որ բռնադատող, ծուռ միջոցներով Այս մանկամարդի զգայարանքը յաղթահարել ես եւ թունաւորել, թէ՞ դա եղել է լոկ աղերսանքով եւ այնպէս ուղիղ սիրախօսութեամբ, Որպիսին սիրտը ուղղում է սրտին։

OTHELLO.
Աղաչում եմ ձեզ, Մարդ ուղարկեցէք՝ տիկնոջը բերեն Աղեղնաւորից եւ իր հօր առաջ թող ինքն իմ մասին վկայութիւն տայ։ Եթէ դուք դատէք նրա խօսքերից, որ ես մեղք ունեմ, Ապա ոչ միայն ետ առէք ինձնից ձեր այս պաշտօնը եւ ինձ շնորհած վստահութիւնը, Այլ ձեր վճիռը կեանքս էլ թող խլի։

DUKE.
Բերեցէք այստեղ Դէզդեմոնային։

OTHELLO.
Եագօ, տար սրանց, տեղը լաւ գիտես։

[Iago and the Servants exit.]

OTHELLO [cont.]
Եւ մինչեւ նա գայ, Նոյն անկեղծութեամբ, որպէս թէ արեանս մոլութիւնները Երկնքի առաջ խոստովանէի, նոյն ճշմարտութեամբ Ես ձեր լրջամիտ ունկնդրութեանը կը ներկայացնեմ, Թէ ինչ միջոցով սիրուն աղջկայ սիրտը շահեցի, Եւ նա էլ՝ իմս։

DUKE.
Պատմիր, Օթելլո։

OTHELLO.
Հայրն ինձ սիրում էր, յաճախ հրաւիրում, Պատմել էր տալիս իմ կեանքի բոլոր պատահարները, Տարի առ տարի, ամէն պատերազմ, պաշարում, արկած, Որ տեսել էի։ Ես էլ, սկսած իմ մանկութիւնից Մինչեւ այն րոպէն, որ նա լսում էր, բոլորը յիշում եւ պատմում էի խիստ աղէտալի ձախորդութիւններ,

Սրտաշարժ դէպքեր ծովի եւ դաշտի, Երբ մազ էր մնացել, որ սպանուէի խրամի վրայ, Ինչպէ՛ս անզգամ թշնամու ձեռքը ես գերի ընկայ։ Ինչպէ՛ս ծախուեցի, ինչպէ՛ս փրկանքով ինձ ետ գնեցի, Եւ այլ դրուագներ իմ ճամփորդական յիշատակներից, Նկարագրելով մեծ քարանձաւներ, չոր անապատներ, Բիրտ քարահանքեր, ժայռեր ու սարեր՝ մինչ երկինք հասած, Ահա պատմութեանս առարկաները. եւ մարդակերներ՝ իրար միս ուտող, Եւ ադամորդիք, որոնց գլուխը ուսերից վար է։ Իսկ Դէզդեմոնան շատ մեծ ախորժով ուզում էր լսել։ Բայց տան գործերը շատ յաճախ նրան դուրս էին կանչում, Եւ նա, շտապով կարգի դնելով, վերադառնում էր Եւ իմ խօսքերը անյագ ականջով լափում էր կարծես։ Այս նկատելով՝ մի անգամ յարմար մի ժամ ընտրեցի Եւ այնպէս արի, որ թախանձագին խնդրի ինձանից Պատմել իմ բոլոր պանդխտութիւնը, Որից հատուածներ լսել էր միայն, այն էլ՝ ոչ ուշով։ Ես ընդունեցի եւ շատ անգամներ նրա աչքերից Արցունք կորզեցի՝ պատմելով բախտի այն հարուածները, Որ կրել էի ջահէլ օրերում։ Երբ աւարտեցի, Նա ինձ նուիրեց հառաչանքների մի ամբողջ աշխարհ, Երդուեց, թէ իրա՛ւ զարմանալի է, խի՛ստ զարմանալի, Շատ սրտաշարժ է, անչա՛փ սրտաշարժ։ Ասաց. «Երանի լսած չլինէի»։ Բայց յետոյ կցեց. «Երնեկ թէ աստուած ինձ այդպիսի մարդ ստեղծած լինէր»։ Շնորհակալ եղաւ եւ յետոյ ասաց. «Եթէ կայ մի ոք ձեր ընկերներից՝ ինձ սիրահարուած, Բաւ է, որ նրան ուսուցէք պատմել ձեր պատմութիւնը, Եւ ես նրանն եմ»։ Այս թելադրանքը բաց արեց լեզուս։ Նա ինձի սիրեց՝ ի սէր իմ տեսած այն վտանգների, Եւ ես էլ նրան՝ ի սէր ցոյց տուած իր կարեկցութեան։ Ահա՛ այն միակ կախարդութիւնը, որ գործ եմ դրել։ Բայց ահա եկաւ։ Թող այժմ ինքը վկայութիւն տայ։

[Desdemona, Iago and Attendants enter.]

## DUKE.

Այդ պատմութիւնը եւ ի՛մ աղջկան կարող էր գրաւել։ Բարի՛ Բրաբանցիո, այս վատ եղածը լաւ կողմից առէք։ Լաւ է պաշտպանուել կոտրած զէնքերով, քան դատարկ ձեռքով։

## BRABANTIO.

Խնդրեմ, թոյլ տուէք, որ դուստրս խօսի։ Եթէ ընդունի, որ կէս-տարփածուն նա ինքն է եղել, Հուր թափուի գլխիս, եթէ այս մարդուն իզուր մեղադրեմ։ Եկ, հե՛զ օրիորդ։ Արդեօք յարգելի այս ժողովի մէջ Ո՞վ է այն անձը, որին աւելի պարտ ես հնազանդել։

## DESDEMONA.

Իմ ազնիւ հայրս։ Երկու զանազան պարտականութիւն տեսնում եմ այստեղ։ Կեանքս ու կրթութիւնս ձեզ եմ պարտական. Կեանքս ու կրթութիւնս ինձ ուսուցել են պատուել, յարգել ձեզ։ Դուք էք իմ տէրը, եւ մինչեւ այստեղ ձեր աղջիկն եմ ես։ Բայց ահա սա՛ է իմ ամուսինը։ Եւ հէնց այն չափով, որչափ իմ մայրը ձեզ էր անձնուէր՝ Ձեզ իր հօրիցն էլ գերադասելով, ես էլ յայտնում եմ, Որ անձնուէր եմ մաւրին, իմ տիրոջ։

## BRABANTIO.

Լաւ, Աստուած քեզ հետ։ Ես աւարտեցի։ Ձերդ բարձրութիւն, այժմ պետական գործերին անցնենք։ Լաւ էր՝ մի զաւակ որդեգրէի, քան հայր լինէի։ Եկ այստեղ, ո՛վ մաւր։ Իմ բոլոր սրտով տալիս եմ քեզ այն, Որ

եթէ ինքդ առած չլինէիր, Իմ բոլոր սրտով պիտի մերժէի։ Քո շնորհիւ, գոհա՛ր, Հոգով ուրախ եմ, որ քեզանից դուրս էլ զաւակ չունեմ. Թէ ոչ, փախուստդ ինձ կը հարկադրէր բռնակալ դառնալ Եւ կապանք դնել նրանց ոտքերին։ Վերջացրի, տէր իմ։

DUKE.
Թոյլ տուէք, որ ես ձեր կողմից խօսեմ եւ մի վճիռ տամ, Որ իբրեւ սանդուղք կամ թէ պատուանդան Այս սիրող զոյգին թոյլ տայ բարձրանալ դէպի ձեր շնորհը։ Երբ ճար չի մնում, եւ յոյսն՝ հատնում, Վատթարի գալով՝ վատն է վերջանում։ Անցած մի չարիք եթէ շատ ողբանք, Նոր չարիքների մի դուռ կը բանանք։ Ինչ որ չենք կարող փորձանքից փրկել, Թող համբերութեամբ գիտնանք անարգել։ Գողօնի տէրը երբ որ ժպտում է, Էլի նա գողից մի բան կապտում է։ Ով շռայլում է ապարդիւն կսկիծ, Նա գողանում է սեփական ինչքից։

BRABANTIO.
Թող թուրքը, ուրեմն, Կիպրոսը գրաւէ, Ի՞նչ հոգ, քանի որ ժպտալը բաւ է։ Այն մարդն է կարող այդ խրատները լռութեամբ տանել, Ով չունի այլ ցաւ, եթէ ոչ ցաւից սփոփանք հանել, Բայց ով փոխ առնի համբերութիւնից, որ տայ տխրութեան, Նա պէտք է տոկայ թէ՛ ցաւին եւ թէ՛ մխիթարութեան։ Խրատները մեղր կամ թէ լեղի են, Նայած թէ տեղին կամ անտեղի են։ Եւ բառերը միշտ կը մնան բառեր. դեռ ինձ չէ յայտնի, Որ ցաւոտ սրտին ականջը բուժում պարզեւած լինի։ Բայց անցէք, խնդրեմ, պետութեան գործին։

DUKE.
Տաճիկն ահեղ պատրաստութեամբ արշաւում է Կիպրոսի վրայ։ Օթելլո՛, տեղական ամրութիւններն ամէնից լաւ քեզ են ծանօթ, եւ թէպէտ մենք այնտեղ մի կուսակալ ունենք, որ հռչակուած է իր ընդունակութեամբ, բայց եւ այնպէս հասարակաց կարծիքը արդիւնքների վեհապետուհին, աւելի մեծ վստահութեամբ քեզ է տալիս իր ձայնը։ Պէտք է, ուրեմն, զիջանես նոր ձեռք բերած բախտդ մի քիչ նսեմացնել այս տաժանելի եւ արկածալից արշաւանքով։

OTHELLO.
Ով ակնածելի տէր սենատորներ, Վաղուց՝ բռնապետ սովորութիւնը Դարձել է ռազմի քար ու պողպատէ բիրտ անկողինը Ինձ համար փափուկ, երեք հեղ ջոկած փետրէ մահճի պէս։ Խոստովանում եմ, որ ես գտնում եմ չարքաշութեան մէջ Բնածին աւիւն եւ զուարթութիւն։ Ես յանձն եմ առնում Վարել նոր ծագած այս պատերազմը տաճիկների դէմ Եւ խոնարհուելով ձեր պատկառելի ժողովի առաջ՝ Խնդրում եմ յարմար տնօրինութիւն իմ կնոջ համար Եւ պարտ ու պատշաճ կարգադրութիւններ դիրքի եւ ծախքի, Տան եւ ծառայի, ինչպէս վայել է նրա կենցաղին։

DUKE.
Եթէ յօժար ես, թող հօր մօտ կենայ։

BRABANTIO.
Ես չեմ ընդունում։

OTHELLO.
Ոչ էլ ես, տէր իմ։

DESDEMONA.
Ես էլ չեմ ուզում այնտեղ բնակուել եւ իմ հօր աչքին միշտ երեւալով՝ բարկացնել նրան։ Ո՛վ ողորմած դուքս, իմ աղաչանքին բարեհաճօրէն Ունկն շնորհեցէք, եւ թող ձեր ձայնը ինձ պաշտպան կանգնի եւ օգնութեան գայ իմ անփորձութեան։

DUKE.
Լաւ, Դէզդեմոնա, ի՞նչ է փափագդ։

DESDEMONA.
Որ Օթելլոյին սիրեցի՝ հետը ապրելու համար, Հախուռն ընթացքս եւ փոթորկայոյզ ճակատագիրս Թող փողահարեն համայն աշխարհին։ Սիրտս ամուսնուս բուն իսկ արհեստին սիրահարուած է. Ես Օթելլոյի հոգու՛ մէջ տեսայ նրա երեսը Եւ նրա փառքին եւ հերոսական շնորհքներին է, Որ նուիրել եմ հոգիս ու բախտս։ Ուրեմն, ազնիւ տեարք, Թէ ինձ տուն թողնեն խաղաղութեան մէջ ապրող ցեցի պէս, Եւ ամուսինս պատերազմ գնայ. Այն, որի համար նրան սիրում եմ, կը խլուի ինձնից, Եւ դեռ պէտք է ինձ նրա զգալի բացակայութեան Չրկանքը կրել։ Թողէք, որ գնամ ես էլ նրա հետ։

OTHELLO.
Տուէք ձեր ձայնը նրա աղերսին։ Երկինքն է վկայ, Ես այս չեմ խնդրում իմ ախորժակի հաճութեան համար, Ոչ էլ իմ աստղի կամ իմ սեփական բաւականութեան՝ Երիտասարդի վառ տենչերն իմ մէջ անցած լինելով, Այլ նրա հոգուն սիրով գոհացում բաշխելու համար։ Եւ Աստուած չանի, որ երբեւիցէ ձեր մտքովն անցնի, Թէ ես կարող եմ ձեր՝ ինձ վստահած մեծ ու լուրջ գործը Անխնամ թողնել, երբ նա գայ ինձ հետ։ Ո՛չ, երբ թեւաւոր Կուպիդի թեթեւ ու խօլ խաղերը Մտքի եւ գործի ձիրքերս փակեն հեշտ մեղկութեան մէջ, Եւ ժամանցները պաշտօնս աղարտեն կամ թէ խաթարեն, Թող տանտիկիններն իմ սաղաւարտից մի տապակ շինեն, Եւ ամէն տեսակ անարգ ու նուաստ ձախորդութիւններ Խուժեն խմբովին համբաւիս վրայ։

DUKE.
Թող այնպէս լինի, ինչպէս դուք ձեր մէջ յարմար համարէք Նրա մնալու կամ գալու մասին։ Գործը կանչում է, արագութիւնը թող պատասխանի։

SENATOR I.
Պէտք է ա՛յս գիշեր ճանապարհ ընկնէք։

OTHELLO.
Իմ աչքի վրայ։

DUKE.
Առաւօտն իննին պէտք է մենք կրկին ժողովուինք այստեղ։ Օթելլո, մի սպայ թող ետեւ մնայ, Նա քեզ կը բերի մեր հրովարտակը եւ ամէն այլ ինչ, Որ քո պաշտօնի եւ դիրքի համար կարեւոր լինի։

OTHELLO.
Եթէ կը հաճի ձեր բարձրութիւնը, իմ դրօշակիրը. Նա վստահելի եւ պարկեշտ մարդ է։ Նրան եմ յանձնում բերել կնոջս եւ ամէն այլ բան, Որ ձեր շնորհը արժան համարի ետեւից ղրկել։

DUKE.
Լաւ, այդպէս լինի։ Բարի գիշեր ձեզ իւրաքանչիւրիդ։ [To Brabantio.] Եւ, ազնիւ սինեօր, եթէ ըստինքեան հերոսութիւնը Զուրկ չէ հմայիչ գեղեցկութիւնից, Ապա ձեր փեսան, այո՛, աւելի սիրուն է, քան սեւ։

SENATOR I.
Գնաս բարով, քա՛ջ մաւր, բախտաւոր արա Դէզդեմոնային։

BRABANTIO.
Աչք պահիր վրան, եթէ աչք ունիս տեսնելու համար։ Իր հօրը խաբեց, քեզ էլ կը խաբէ։

OTHELLO.
Կեա՜նքս գրաւ նրա հաւատարմութեան։

[The Duke, Senators and Officers all exit.]

OTHELLO [cont.]
Դե՛հ, պարկեշտ Եագո, Դէզդեմոնայիս քո ձեռքն եմ յանձնում։ Խնդրեմ, թող կինդ ուղեկցի նրան, Եւ երբ յարմար է, երկուսին էլ բեր։ Եկ, Դէզդեմոնա, մէկ ժամ ունեմ ես, որ պէտք է քեզ հետ Նուիրեմ սիրոյ եւ տան գործերի եւ կարգադրութեան։ Պէտք է յարմարուենք հանգամանքներին։

[Othello and Desdemona exit.]

RODERIGO.
Եագո՛։

IAGO.
Ի՞նչ է, հոգիս։

RODERIGO.
Գիտե՞ս ինչ եմ ուզում անել։

IAGO.
Էլ ի՞նչ կը լինի. մտնել անկողին եւ քնել։

RODERIGO.
Գնում եմ, ուղղակի ջուրն ընկնեմ։

IAGO.
Եթէ այդ տեսակ բան անես, էլ երեսիդ մտիկ չեմ տայ։ Վա՜հ, ի՞նչ յիմարն ես եղել։

RODERIGO.
Յիմարութիւնն այն է, որ մարդ ապրի, երբ ապրելը տանջանք է. երբ մահն է բժիշկ, մեռնելն է ճարը։

IAGO.
Ի՜նչ ստորութիւն։ Չորս անգամ եօթը տարի է, որ ես աչք եմ բացել այս աշխարհի վրայ, եւ այն օրից, որ ես կարողացել եմ շահը վնասից զանազանել, դեռ մէ՛կ մարդ չեմ գտել, որ ինքն իր օգուտը հասկանայ։ Ես աւելի շուտ ադամորդութիւնս մի կապիկի հետ կը փոխէի, քան թէ մի քածի համար ինձ ջուրը կը ձգէի։

RODERIGO.
Ի՞նչ անեմ։ Գիտեմ, որ ամօթ է ինձ համար այսպէս գժուել, բայց առաքինութիւնս անզօր է դրա դէմ։

IAGO.
Առաքինութի՜ւն, բո՜ղկ։ Մեզնից է կախուած՝ այսպէս լինել կամ այնպէս։ Մեր մարմինը մեր պարտէզն է, եւ մեր կամքը՝ պարտիզպանը, կ'ուզենք, նրա մէջ եղինջ կը ցանենք, կ'ուզենք, հազար, մշտիկ կը ցանենք կամ ծոթրին քաղհան կ'անենք, մէկ տեսակ կանաչեղէն կը ցանենք կամ բոլորն իրար կը խառնենք, կը թողնենք, որ պարտէզը մեր ծուլութիւնից անբեր դառնայ, կամ մեր աշխատութեամբ կը պարարտացնենք։ Այո՛, այդ կարողութիւնը եւ բարելաւելու ընդունակութիւնը մեր կամքիցն է կախուած։ Եթէ մեր կեանքի կշիռը խոհականութեան մի նժար չունենար՝ զգայասիրութեան նժարին հակակշռելու, մեր արեան բորբոքը եւ ստոր բնազդները մեր բանը վատ տեղ կը հասցնէին։ Բայց մենք ունենք խոհականութիւն՝ մեր կատաղի մարմաջները, մարմնական իղձերը եւ մեր անսանձ ցանկութիւնները հովացնելու համար, որից եւ հետեւցնում եմ, թէ այն, ինչ որ դու սէր ես անուանում, մի ոստիկ է, մի ընձիւղ։

RODERIGO.
Դա ճիշտ չէ։

IAGO.
Սէրն արեան տռփանքն է եւ կամքի թուլութիւնը։ Գնա, գնա, մարդ դարձիր։ Ջո՞ւրն ընկնես։ Կատուի ձագերին եւ աչքերը չբացած շան լակոտներին են ջուրը ձգում։ Ես միշտ ասել եմ, թէ քո բարեկամն եմ, եւ խոստովանում եմ, թէ ամուր եւ մշտատեւ կապերով կապուած եմ քո արժանիքի հետ։ Երբեք չէի կարող քեզ այնպէս օգտակար լինել, ինչպէս այժմ։ Քսակդ փողով լցրու։ Եկ մեզ հետ այս կռուին։ Կեղծ մօրուքով երեսդ ծպտիր։ Ասում եմ քեզ, քսակդ լցրու փողով։ Անկարելի բան է, որ Դէզդեմոնան երկար ժամանակ շարունակի մաւրին սիրել։ Քսակդ փողով լցրու։ Ոչ էլ մաւրը՝ նրան։ Թունդ կպաւ մաւրին, թունդ էլ պոկ կը գայ։ Դու ջանք արա, որ փողով լցնես քսակդ։ Այս մաւրերը շատ փոփոխամիտ մարդիկ են։ Քսակդ փողով լցրու։ Այն կերակուրը, որ հիմա նրա քիմքին մեղրից քաղցր է, շատ չի քաշի՝ լեղիից դառը կ'թուայ։ Դէզդեմոնան էլ երիտասարդ մարդու ետեւից կ'ընկնի, հէնց որ մաւրի մարմնից կշտանայ, ինքն իր ընտրութեան սխալը կը նկատի. փոփոխութիւն է պէտք, փոփոխութիւն։ Ուրեմն՝ քսակդ լցրու փողով։ Եթէ անպատճառ պէտք է սատանի բաժին դառնաս, գոնէ այդ բանը աւելի հաճելի ձեւով արա, քան թէ ջուրն ընկնելով։ Փող հաւաքիր որքա՜ն կարող ես։ Եթէ սուրբ պսակը եւ մի դիւրաբեկ ուխտ, որ փոխանակուած է մի թափառական բարբարոսի եւ մի խորամանկ վենետիկուհու միջեւ, չափազանց դժուար գործ չլինի իմ ճարպկութեան համար եւ բոլոր գեհենի ցեղի համար, դու նրան կը վայելես։ Ուրեմն՝ փող ճարիր։ Թո՛ւի, ջո՞ւրն ընկնել, դա ի՞նչ միտք ունի։ Աւելի ընտրիր փափագիդ հասնել եւ կախուել, քան թէ չհասած՝ ջուրն ընկնել։

RODERIGO.
Եթէ բախտս փորձեմ, կարո՞ղ եմ քեզ վրայ յոյս դնել։

IAGO.
Իմ կողմից միամիտ կաց. գնա փող ճարիր։ Շատ անգամ ասել եմ քեզ եւ նորից ու նորից կրկնում եմ. ես մաւրին ատում եմ։ Իմ դատը սրտումս է խրուած, քոնն էլ նոյնչափ խոր հիմք ունի։ Միանանք եւ նրանից ոխ հանենք։ Եթէ կարողանաս նրա գլուխը եղջիւրներով զարդարել, դա քեզ համար հաճոյք կը լինի եւ ինձ՝ զուարճութիւն։ Շատ գալիքներ կան ժամանակի արգանդում, որ պէտք է ծնուեն։ Յառա՛ջ, գնա՛, փող պատրաստիր։ Վաղն էլի, կը խօսենք այս մասին։ Գնաս բարով։

RODERIGO.
Վաղն առաւօտ ո՞ւր հանդիպենք։

IAGO.
Իմ բնակարանում։

RODERIGO.
Կանուխ կը գամ քեզ մօտ։

IAGO.
Լաւ, մնաս բարով, հասկացա՞ր, Ռոդրիգո։

RODERIGO.
Ի՞նչ։

IAGO.
Տես, ջուրն ընկնել չլինի, հասկացա՞ր։

RODERIGO.
Միտքս փոխեցի, գնում եմ՝ բոլոր կալուածներս ծախեմ։

[Exits.]

IAGO.
Միշտ մի յիմար մարդ քսակս եմ շինում։ Այլապէս ինչո՞ւ սրբապղծէի ձեռք բերած խելքս՝ Տալով ժամանակս այսպէս ապուշին, Եթէ ոչ միայն իմ զուարճութեան եւ շահի համար։ Ատում եմ մաւրին։ Շատերը կարծում են, Թէ նա երբեմն սաւաններիս մէջ իմ տեղն է բռնել։ Ճի՞շտ է այդ, թէ՞ ոչ, դա ինձ յայտնի չէ, Բայց ես այդ տեսակ կասկածի դէպքում Այնպէս կը վարուեմ, որպէս թէ իրօք վստահ լինէի։ Նա յարգում է ինձ. ուրեմն աւելի դիւրաւ կարող եմ Մտադրածներս գործ դնել վրան։ Միւս կողմից՝ Կասսիոն շնորհքով մարդ է։ Լաւ, տեսնենք հիմա... պաշտօնը խլել, Կամքս էլ զարդարել խորամանկութեան երկու ցցունքով։ Հա՛, ինչպէ՞ս... ինչպէ՞ս... մի լաւ մտածեմ... Քիչ յետոյ մաւրի ականջը հալել, Որպէս թէ Կասսիոն շատ է մտերիմ նրա կնոջ հետ։ Նա այնպիսի դէմք եւ հաճոյական բարք ու վարք ունի, Որ կասկածանքի շուտ տեղիք կը տայ։ Ձեւուած է կանանց գլխից հանելու։ Մաւրը մի անկեղծ, սրտաբաց մարդ է. Որ բոլոր պարկեշտ թուացողներին պարկեշտ է կարծում, Եւ կարելի է այնպէս քնքշութեամբ քթիցը քարշ տալ, Ինչպէս էշերին։ Գտա՛յ։ Յղացուե՛ց։ Դժոխք ու խաւար Ճիւաղ զաւակին բերեն լոյս աշխարհ։

[Exits.]

][][

ACT II. SCENE I.
A seaport in Cyprus. A Platform. Montano and two Gentlemen enter.

MONTANO.
Այս հրուանդանից ի՞նչ ես նշմարում ծովի երեսին։

GENTLEMAN I.
Ոչնչից ոչինչ. խիստ յուզուած ծով է։ Ոչ մի առագաստ չեմ ջոկում ջրի եւ երկնքի մէջ։

MONTANO.
Կարծեմ թէ քամին բարձր է գոռացել ցամաքի վրայ։ Այսչափ բուռն հողմ երբեք չի ցնցել մեր պատնէշները։ Ծովի վրայ էլ եթէ այսպիսի շփոթ է սարքել, Ի՞նչ կաղնեայ կողեր, երբ նրանց վրայ լեռներ են հալւում։ Չեն խախտուի տեղից։ Ի՞նչ ենք լսելու։

GENTLEMAN II.
Թուրք նաւատորմի կազմալուծումը։ Եկ, կանգնիր այստեղ՝ փրփրադէզ ափին, Եւ նայիր՝ ինչպէս կշտամբուած կոհակն Ասես խուժում է ամպերի վրայ, Հողմայոյզ ալիքն իր բարձրակարկառ ամեհի բաշով Ջուր է սրսկում վառ Արջի վրայ՝ Անշարժ բեւեռի պահապաններին մարելու համար։ Երբե՜ք չեմ տեսել կատաղած ծովի այսպիսի յուզում։

MONTANO.
Եթէ թուրքական նաւատորմիղը չի ապաւինել Մի ծովախորշում, նա ընկղմած է։ Անկարելի է սրան դիմանալ։

[Gentleman III enters.]

GENTLEMAN III.
Ուրախ լո՜ւր, տղե՜րք. կռիւն աւարտուեց. Բուռն փոթորիկն այնպէս դմփել է օսմանցիներին, Որ խափանուել է նրանց խորհուրդը։ Վենետիկից եկած փառահեղ մի նաւ Տեսել է նրանց մեծագոյն մասի նաւաբեկումը Եւ քայքայումը։

MONTANO.
Ի՞նչ, ճի՞շտ ես ասում։

GENTLEMAN III.
Նաւը հէնց այստեղ խարիսխ է ձգել։ Մի Վերոնեզ է։ Միքայէլ Կասսիոն, որ տեղակալն է քաջ Օթելլոյի, Դուրս եկաւ ցամաք, բայց մաւրը ինքը ծովի վրայ է Եւ լիակատար իրաւունքներով գալիս է Կիպրոս։

MONTANO.
Ա՜հ, շա՜տ ուրախ եմ. նա արժանաւոր կառավարիչ է։

GENTLEMAN III.
Հէնց նոյն Կասսիոն, թէեւ խիստ հրճուած Թուրքերի կրած կորուստի վրայ, շատ մտահոգ է եւ աղօթում է, որ մաւրի գլխին մի փորձանք չգայ, Քանզի մի ուժգին եւ վատ փոթորիկ նրանց բաժանել է։

MONTANO.
Աստուած պահպանի։ Ես ծառայել եմ նրա ձեռքի տակ. Մարդը իսկ եւ իսկ զինուորի նման գիտէ հրամայել։ Գնանք ծովեզերք՝ թէ՛ եկած նաւը տեսնելու համար, Թէ՛ սպասելով քաջ Օթելլոյին, աչք ձգենք հեռուն, Մինչեւ ուր ծովը եւ լուրթ երկինքը միախառնւում են։

GENTLEMAN III.
Լաւ, այդպէս անենք, ամէն մի րոպէ մի նոր եկող կայ։

[Cassio enters.]

CASSIO.
Շնորհակալութիւն այս պատերազմիկ կղզու քաջերիդ, Որ Օթելլոյին յարգում էք այսպէս։ Օ՜, թող երկինքը պաշտպանի նրան տարերքի ընդդէմ. Շատ վտանգալից մի ծովի վրայ կ'որցրի նրան։

MONTANO.
Լաւ՞ է իր նաւը։

CASSIO.
Այո՛, իր նաւը ամուր շինուած է, եւ նաւապետը իր գործին հմուտ եւ վարձառու է։ Ուստի յոյսերս, թէեւ մահամերձ, Սակայն վստահ եմ, որ բուժուելու են։

[From outside a voice can be heard crying, “A sail! A sail! A sail!”]

CARRIO [cont.]
Ի՞նչ աղմուկ է այս։

GENTLEMAN III.
Ամբողջ քաղաքում մարդ չի մնացել։ Ծովի եզերքին խուռն ամբոխը, շարքերով կանգնած, Գոչում է. «Նաւ՛, նաւ՛»։

CASSIO.
Սիրտս ասում է, թէ կուսակալն է։

[Thunder of a cannon.]

GENTLEMAN II.
Պատուի ողջոյն է, որ արձակում են. Այսպէս թէ այնպէս՝ բարեկամներ են։

CASSIO.
Խնդրում եմ, պարոն, գնացէք, տեսէք, թէ եկողն ով է, եւ լուր տուէք մեզ։

GENTLEMAN II.
Իսկո՛յն։

[Exits.]

MONTANO.
Բարի տեղակալ, ձեր զօրապետը ամուսնացա՞ծ է։

CASSIO.
Եւ խիստ բախտաւոր։ Մի օրիորդ է նրան վիճակուել, Որ բարձր է ամէն նկարագրումից եւ խօլ համբաւից, Որ ներբողագիր գրիչներից վեր եւ արարչակերտ իսկական ձեւի գեղեցկութեան մէջ Անց է վարպետի ճարտարութիւնից։

[Gentleman II enters.]

CASSIO [cont.]
Ի՞նչ կայ, ո՞վ եկաւ։

GENTLEMAN II.
Մի ոմն Եագո, որ դրօշակիր է զօրապետի մօտ։

CASSIO.
Եւ ինչպէ՛ս յաջող եւ շուտ է հասել։ Փոթորիկներն էլ, ուռած ծովերը եւ գոռ հողմերը, Ակօսաւորուած սուր խարակները, դիզուած խիճերը՝ Անմեղ նաւերի այդ դարանամուտ դաւաճանները, Կարծես գեղեցկի գիտակցութիւնով Իրենց մահացու բնոյթը լքել եւ աստուածային Դէզդեմոնային ճամփայ են տուել, Որ անփորձ անցնի։

MONTANO.
Ո՞վ է դա։

CASSIO.
Հէնց նա, որ ասում էի. Մեր զօրապետի զօրապետուհին, Որին քաջ Եագոն պէտք է ուղեկցէր, եւ որի գալը եօթն օր կանխել է մեր ենթադրածը։ Հզօր Իւպիտեր, պահապան եղիր եւ զօրեղ շնչովդ ուռեցրու նրա առագաստները, Որ իր պերճ նաւով օրհնութիւն բերի այս ծովախորշին. Սիրով բաբախի Դէզդեմոնայի բազուկների մէջ, Նոր բոցով վառի մեր մարած ոգին եւ բերկրանք բերի ամբողջ Կիպրոսին։

[Desdemona, Emilia, Iago and Rodrigo enter.]

CASSIO [cont.]
Այնտեղ նայեցէք, նաւի գանձն է այն, որ ցամաք իջաւ։ Կիպրացի մարդի՛կ, ծնկաչոք նրան հիւրընկալեցէք։ Ողջոյն ձեզ, տիկին, երկնային շնորհն Աջից ու ձախից եւ ամէն կողմից շրջապատի ձեզ։

DESDEMONA.
Շնորհակալ եմ, քաջարի Կասսիո, ի՞նչ լուր իմ մարդուց։

CASSIO.
Դեռ տեղ չի հասել։ Ուրիշ լուր չունեմ, թէ ոչ, որ լաւ է, եւ ինքն էլ շուտով այստեղ կը լինի։

DESDEMONA.
Բայց վախենում եմ. ինչպէ՞ս պատահեց, որ իրար կորցրիք։

CASSIO.
Ծովի եւ երկնի ահեղ պայքարն էր, որ մեզ բաժանեց։

[More voices from outside, crying, “A ship! A ship!” mixed with the thunder of a cannon.]

GENTLEMAN II.
Բարեւ են տալիս մեր միջնաբերդին։ Սա էլ մեզնից է։

CASSIO.
Գնա եւ լուր բեր։

[Gentleman II exits.]

CASSIO [cont.]
Գալուստդ բարի, սիրելի Եագո։ [To Emilia.] Բարեւ ձեզ, տիկին։ Բայց չնեղանաս իմ ազատ վարքից, սիրելի Եագո։ Մենք վարժուած ենք քաղաքավարութեան այս խիզախ ձեւին։

[He kisses Emilia.]

IAGO.
Եթէ նա շրթունքն այնքան շատ տայ ձեզ, Որքան ինձ՝ լեզուն, շուտ կը կշտանաք։

DESDEMONA.
Խե՜ղճ ողորմելի, խօսք չունի բերնում։

IAGO.
Հա՛, եւ ինչքա՜ն շատ։ Այն էլ՝ միշտ, երբ ես քնել եմ ուզում։ Ճիշտ է, ձեր առաջ մի քիչ իր լեզուն գրպանն է դնում եւ մտքի մէջն է իմ դէմ մրթմրթում։

EMILIA.
Ի՞նչ պատճառ ունես այդպէս ասելու։

IAGO.
Լաւ է, լաւ, գիտենք, Դուք դուրսը բամբակ, տան մէջ զանգակ էք, Խոհանոցի մէջ՝ վայրենի կատու. Սուրբ էք ուրիշին վիրաւորելիս, Դեւ էք, երբ որ ձեզ վիրաւորում են, Տնտեսութեան մէջ սիրում էք խաղալ եւ անկողնի մէջ տնտես ձեւանալ։

DESDEMONA.
Թու՛հ քեզ, բամբասող։

IAGO.
Ճիշտ է, թուրք դառնամ, թէ սուտ եմ ասում։ Քնից զարթնում էք խաղալու համար, Անկողին մտնում՝ գործելու համար։

EMILIA.
Եթէ ուզենամ գովքս գրել տալ, քեզ չեմ յանձնի այդ։

IAGO.
Եւ շատ լաւ կանէս։

DESDEMONA.
Եթէ ուզէիր ինձ գովասանել, ի՞նչ կը գրէիր։

IAGO.
Օ՛, ազնիւ տիկին, այդպիսի բանի մի գործածէք ինձ։ Թէ քննադատ չեմ, ոչնչի պէտք չեմ։

DESDEMONA.
Դե՛հ, մի փորձ արա։ Մարդ ուղարկեցի՞ր նաւահանգիստը։

IAGO.
Այո, տիրուհի։

DESDEMONA.

Սրտով ուրախ չեմ, բայց ես խաբում եմ՝ սրտիս ներսինը Ուրախ թուալով։ Տեսնենք, թէ ինչպէ՛ս կը գովէիր ինձ։

IAGO.

Փնտրում եմ, տիկին, բայց հաւատացէք, Բանաստեղծութիւնս այնպէս է պոկւում խելապատակես. Ինչպէս սոսինձը թաղիքի վրայից. Ուղիղ, ամէն բան պոկում է իր հետ։ Բայց մուսաս հիմա երկունքի մէջ է. Ահա ծնունդը։ Եթէ գեղեցիկ եւ խելացի է, խելքով կը գործի. Գեղեցկութիւնը պէտք է գործածուի, խելքը գործածի։

DESDEMONA.

Շատ լաւ գովեցիր։ Իսկ թէ սեւ լինի եւ մտքով ճարտա՞ր։

IAGO.

Եթէ սեւ լինի եւ մտքով ճարտար, Ճերմակ կը գտնի իր սեւին յարմար։

DESDEMONA.

Է՛լ աւելի վատ։

EMILIA.

Իսկ եթէ սիրուն եւ յիմար լինի։

IAGO.

Երբեք սիրունը յիմար չի լինի. Հէնց յիմարութեամբ ծոցը կը լցնի։

DESDEMONA.

Դրանք անմիտ հին պարադոքսներ են՝ գինետներում յիմարներիս ծիծաղեցնելու համար։ Ուրեմն ի՞նչ ողորմելի գովեստ ես պահել այն կնոջ համար, որ տգեղ է եւ յիմար։

IAGO.

Որչափ էլ տգեղ ու յիմար լինի, կարող է նա՛ էլ, Ինչ որ խելացին ու գեղեցիկը սովոր է անել։

DESDEMONA.

Ին՛չ թանձր տգիտութիւն, ամէնից վատին ամէնից լաւ գովեցիր։ Բայց ի՞նչ գովեստ կը տայիր մի իսկապէս պատուական կնոջ, որ իր արժանիքի վրայ վստահ՝ չարամտութիւնից անգամ յարգանք կը կորզէր։

IAGO.
Ով որ սիրուն է, սակայն ոչ գոռոզ, Որ լեզուանի է, բայց ոչ մեծախօս, Ոսկի շատ ունի, բայց պարզ է մնում, Կարո՛ղ է անել, ինչ որ չի անում, Որ չարութիւնը գիտէ մոռանալ եւ բարկանալիս գիտէ մեղմանալ, Այնքան ապուշ չէ եւ այնքան տգէտ, Որ ձկան պոչը փոխի գլխի հետ, Գիտէ մտածել, բայց միտքը չասել, Իր հետեւողին չդառնալ նայել, Այդպիսի մէկը յարմար կը լինի, Եթէ այդպիսին գոյութիւն ունի։

DESDEMONA.
Հը՞, ի՞նչ անելու։

IAGO.
Իր լակոտներին ծիծ տալու եւ գարեջրի հաշիւ պահելու։

DESDEMONA.
Վերջաբանդ թէ՛ կաղ էր, թէ՛ անմիտ։ Էմիլիա՛, այս մարդուց բան չսովորես, թէեւ ամուսինդ է։ Ի՞նչ ես ասում, Կասսիո, չէ՞ որ շատ կոշտալեզու եւ վրանբաց բաներ ասող է։

CASSIO.
Այո՛, տիկին, բաց խօսող է։ Պէտք է նրան իբրեւ զինուոր դատէք, ոչ թէ իբրեւ գիտնական։

IAGO.
[Aside.] Դէզդեմոնայի ձեռքն առնում է իր ձեռքի մէջ։ Հը՛, շատ լաւ, փսփսա։ Հէնց այսքան պստիկ ոստայնով էլ կարող եմ Կասսիոյի պէս խոշոր ճանճին բռնել։ Այո՛, ժպտա երեսին, ժպտա, այդ սիրաքստիկդ քեզ իմ թակարդն է ձգելու։ Հա՛, ճիշտ ես ասում, հէնց այդպէս է. այդ ծեքծեքումներդ այնպէս փորձանք բերեն տեղակալութեանդ գլխին, որ մէկ էլ երեք մատներդ այդքան բերնիդ չտանես, դրանով ուզում ես պարո՛ն ձեւանալ։ Շատ բարի, լաւ համբուրեցիր, հրաշալի կերպով գլուխ տուիր, գլուխդ վկա՛յ։ Վա՛հ, էլի մատներդ շրթունքիդ դրի՞ր, գրեխի խողովակ դառնան քեզ համար։

[Trumpets sound.]

IAGO.
Ա՛հ, մաւրը եկաւ։ Նրա շեփորի ձայնն է։

CASSIO.
Իսկ որ այդպէս է։

DESDEMONA.
Ընդառաջ գնանք եւ ընդունենք նրան։

CASSIO.
Ահա, եկաւ։

[Othello and Attendants enter.]

OTHELLO.
Սիրո՛ւն ռազմիկս։

DESDEMONA.
Իմ սիրելի՛ Օթելլոս։

OTHELLO.
Որքան զարմացած, նոյնքան ուրախ եմ, Որ ինձնից առաջ արդէն հասել ես։ Ո՛վ հոգուս հրճուանք, Եթէ ամէն մի փոթորկից յետոյ այսպէս հանգիստ կայ, Թող փչե՜ն հողմեր, մինչեւ մահին էլ զարթեցնեն քնից, Եւ թող բարձրանայ յոգնատանջ նաւը սար-ծովերի վրայ, Ոլիմպից վերեւ եւ յետոյ այնքան վար խորասուզուի, Որքան դժոխքը ցած է երկնքից։ Եթէ մեռնելս հէնց հիմա լինէր, Դա պիտի լինէր երջանիկ մեռնել։ Հոգիս հասել է այնքան անսահման բաւականութեան, Որ վախենում եմ՝ սրան հաւասար այլ երջանկութիւն էլ չվիճակուի իմ անյայտ բախտին։

DESDEMONA.
Աստուած ո՛չ անի։ Այլ միշտ մեր սէրը եւ մեր հրճուանքը Համաչափ աճեն մեր օրերի հետ։

OTHELLO.
Ամէ՜ն, ո՛վ երկինք։ Որչափ խօսում եմ հրճուանքիս վրա՛յ, դեռ չեմ կշտանում։ Դա խեղդում է ինձ։ Շատ է ինձ այդքան ուրախութիւնը. Այ՛ս եւ ա՛յս լինեն մեր ամէնից խիստ ընդհարումները։

[They kiss, wet and deep.]

IAGO.
[Aside.] Այո՛, առայժմ լաւ ներդաշնակ էք, Բայց պարկեշտ մարդ չեմ, եթէ այս սիրուն երաժշտութեան Լարաբոյթերը չթուլացնեմ։

OTHELLO.
Գնանք դղեակը։ Լո՛ւր, բարեկամներ, կռիւը վերջացաւ։ Թուրքերն ընկան ջուր։ Ինչպէ՞ս են իմ հին բարեկամները։ Մեղրիկ, Կիպրոսում քեզ շատ կը սիրեն։ Ես այս մարդկանց մէջ շատ սէր եմ տեսել։ Օ՛, անուշի՛կս, անկապ եմ խօսում Եւ զառանցում եմ ուրախութիւնից։ Սիրելի Եագո, Գնա ծովափը եւ սնդուկներս հանել տուր նաւից, Նաւապետին էլ բեր միջնաբերդը։ Լաւ նաւապետ է եւ արժանի է շատ յարգ ու պատուի։ Եկ, Դէզդեմոնա, նորից Կիպրոսում գալուստդ բարի՛։

[All exit save Iago and Rodrigo.]

IAGO.
Քիչ յետոյ եկ ինձ գտիր նաւամատոյցում: Մօտ եկ: Եթէ դու սիրտ ունես,- եւ ասում են, թէ ստոր մարդիկ էլ սիրահարուելիս այնպիսի ազնուութիւն են ստանում, որ ի բնէ չեն ունեցել, - լսիր ինձ: Տեղակալն այս գիշեր պահականոցում հսկելու է: Բայց նախ եւ առաջ պէտք է քեզ ասեմ. Դէզդեմոնան ուղղակի սիրահարուած է Կասսիոյին:

RODERIGO.
Կասսիոյի՞ն: Բա՛հ, անկարելի բան է:

IAGO.
Մատդ դիր այսպէս եւ բան սովորիր: Տե՛ս, ինչպէ՛ս թափով սիրահարուեց մաւրին, միայն որովհետեւ մաւրը մեծ-մեծ էր բրդում եւ պոչաւոր սուտեր էր ասում: Ի՞նչ է, կարծում ես, թէ հէնց այնպէս կը շարունակի՞ նրան սիրել շաղփաղփութեան համար: Եթէ խելք կայ գլխիդ մէջ, այդ տեսակ բան չմտածես: Նրա աչքերին սնունդ է պէտք, եւ ի՞նչ մի առանձին հաճոյք է նրա համար այն դեւի երեսին նայել: Երբ արեան բորբոքը գոհացում ստանալուց յետոյ սառչում է, կրկին վառելու համար, յագեցած ախորժակը նորից գրգռելու համար գրաւիչ դէմք է հարկաւոր, տարիքի համակրութիւն, լաւ ձեւեր եւ գեղեցկութիւն: Իսկ մաւրը այդ բոլորից էլ զուրկ է: Ուրեմն ի չգոյէ այդ անհրաժեշտ հրապոյրների՝ նրա մատաղ սէրը կը տեսնի, որ խաբուած է, կը սկսի զզուանք զգալ, գարշել մաւրից եւ ատել նրան: Բնութիւնն ինքը նրան ճանապարհ ցոյց կը տայ եւ կը ստիպի երկրորդ ընտրութիւն անել:Դէ լաւ, պարոն, եթէ ընդունենք, որ այս այսպէս է, եւ իսկապէս սա շատ ակներեւ եւ անբռնազբօս առաջադրութիւն է, ուրեմն այդ բախտաւորութեան սանդուղքի վրայ ո՞վ կայ աւելի բարձր կանգնած, քան թէ Կասսիոն՝ այդ յեղյեղուկ թշուառականը, որի խղճմտանքը այնքան է միայն, որ քաղաքավարութեան եւ բարեկրթութեան արտաքինն է իւրացրել՝ իր խենեշ եւ լաւ թաքցրած պիղծ միտումներին աւելի դիւրաւ յագուրդ տալու համար: Ի հարկէ, ոչ ոք, ի հարկէ, ոչ ոք: Մի ճկուն ու ճարպիկ խաբեբայ՝ առիթներ հոտոտող. մի վարպետորդի, որ իր համար առաւելութիւններ կը դարբնի եւ կը կեղծի, թէկուզ իսկական առաւելութիւն էլ չունենայ: Կատարեալ սատանի ձագ: Բացի դրանից, անիծուածը գեղեցիկ է, երիտասարդ եւ ունի այն բոլոր բաները, որոնք գրաւում են յիմարներին եւ տհասներին, մի լիակատար թշուառակա՛ն, մի ժանտա՛խտ: Դէզդեմոնան էլ արդէն աչք է ձգել վրան:

RODERIGO.
Դէզդեմոնայից այդ տեսակ բան չեմ հաւատայ. նրա պէս սուրբ կին չկայ:

IAGO.
Սուրբ սխտո՛ր: Նրա խմած գինին էլ խաղողի ջուր է, Եթէ սուրբ լինէր, երբեք մաւրին սիրած չէր լինի: Սուրբս ո՞րն է: Չտեսա՞ր միթէ ինչպէս էր ձեռքը քսքսում Կասսիոյի ձեռքին: Չնկատեցի՞ր:

RODERIGO.
Այո՛, տեսայ, բայց դա պարզ քաղաքավարութիւն էր։

IAGO.
Լրբութի՛ւն, ձեռքս վկա՛յ։ Դա առաջաբանն է եւ մութ նախերգանքը լկտանքի եւ խենեշ մտքերի մի ամբողջ պատմութեան։ Նրանց շրթունքը այնպէս էին իրար մօտեցել, որ շունչները գրկախառնւում էին։ Կեղտոտ մտքէ՛ր, Ռոդրիգո։ Երբ այս փոխադարձ մտերմութիւնները ճամփայ են բաց անում, անմիջապէս ետեւից գալիս է գլխաւորը, մեծ մարզանքը, մարմնական վերջաբանը, վա՛խկ։ Բայց լսիր, մա՛րդ։ Դու այնպէս արա, ինչպէս քեզ ասում եմ. ես եմ քեզ Վենետիկից բերել։ Այս գիշեր պահակութեան գնա. հրամանը քեզ համար ձեռք կը բերեմ։ Կասսիոն քեզ չի ճանաչում, ես էլ քեզնից հեռու չեմ լինի։ Մի բան հնարիր, որ Կասսիոյին բարկացնես, լինի դա բարձր-բարձր խօսելով կամ կարգապահութեան հակառակ մի բան անելով, կամ որեւէ ուրիշ կերպով, որ ինքդ ուզես, նայելով, թէ ինչպէս առիթը կը ներկայանայ։

RODERIGO.
Լաւ։

IAGO.
Լսիր, նա թունդ եւ բարկացկոտ մարդ է. կարելի է՝ քեզ կը զարկի։ Գրգռիր նոյնիսկ, որ զարկի։ Ես այնպէս կ'անեմ, որ հէնց դրա վրայ այս կիպրացիք ապստամբեն, այն ժամանակ նրանց հանդարտեցնելը ոչ մի կերպ գլուխ չի գայ, եթէ ոչ Կասսիոյին դուրս դնելով։ Այդպէս դու աւելի կարճ ճանապարհով կը հասնես փափագիդ այն միջոցներով, որ կ'ունենամ նրանց առաջ տանելու համար, եւ մենք մի այնպիսի խոչընդոտ վերացրած կը լինենք, որ եթէ մնայ, մեզ համար ոչ մի յաջողութեան յոյս չկայ։

RODERIGO.
Լաւ, այդպէս կ'անեմ, միայն թէ առիթը կարողանամ սարքել։

IAGO.
Ես՝ երաշխաւոր։ Մի քիչ յետոյ եկ միջնաբերդը, հիմա պէտք է գնամ, նրա իրեղէնները նաւից դուրս բերեմ։ Մնաս բարով։

RODERIGO.
Մնաս բարով։

[Exits.]

IAGO.
Որ Կասսիոն նրան սիրահարուած է, հաւատացած եմ, Նա էլ՝ Կասսիոյին. այդ էլ կարելի եւ խելքի մօտ

է։ Մաւրը, թէպէտեւ չեմ սիրում նրան, Հաստատուն, սիրող եւ մեծահոգի բնութեան տէր է։ Եւ, հաստատ գիտեմ, շատ գորովալից ամուսին կը լինի Իր կնոջ համար։ Դէզդեմոնային ես էլ եմ սիրում. Ոչ միայն տենչից, թէեւ պատահմամբ Այդ մեծ մեղքից էլ այնքան մաքուր չեմ, Այլ մասամբ դրդուած վրէժիս փափագից, Քանի որ իրօք կասկածներ ունեմ, որ վաւաշ մաւրը Իմ տեղն է ցատկել։ Եւ երբ այդ բանը մտքովս անցնում է, Հանքաթոյնի պէս կրծում է ներսս։ Ոչինչ չի կարող սիրտս հովացնել եւ չի հովացնի, Մինչեւ նրա հետ հաշիւ չփակեմ, կնոջ տեղ՝ կնիկ։ Եւ եթէ չեղաւ, գէթ մաւրի սրտում Այնպիսի զօրեղ մի նախանձ ցանեմ, Որ դատողութիւնն այլեւս բուժել չկարողանայ։ Այժմ այդ բանը անելու համար Այս վենետիկցի թշուառ որսկանս, Որին գրգռում եմ, որ թունդ յարձակուի, Եթէ լաւ բռնի, Միքայէլ Կասսիոն իմ ճանկը կ'ընկնի։ Մաւրի մօտ նրան սոսկալի կերպով կը սեւացնեմ. Նա՛ էլ, կարծում եմ, գիշերուայ գդակս իր գլուխն է դրել. Եւ այնպէս կ'անեմ, որ մաւրը ինձնից շնորհակալ լինի, Սիրի, վարձատրի, որ նրան այնպէս լաւ իշացրել եմ, Անդորրութիւնը եւ հանգիստ կեանքը տակնուվրայ արել խելառութեան չափ։ Այստեղ է արդէն, բայց դեռ անորոշ։ Նենգութեան դէմքը ա՛յն օրն է յայտնի, Երբ որ իր գործը աւարտած լինի։

[Exits.]

][][

## ACT II. SCENE II.

A street. Othello's Herald enters with a proclamation.

### HERALD.

Մեր ազնիւ եւ քաջարի զօրապետ Օթելլոյի հրամանն է, որ նոր ստացուած լուրերի վրայ, որոնք թուրքական նաւատորմի բնաջնջումն են աւետում, ամէն մարդ յաղթութեան տօն կատարի, ոմանք՝ պարով, ուրիշներ՝ հրախաղութեամբ, ամէն ոք՝ իր սիրած զուարճութեամբ եւ խրախճանքով, որովհետեւ, բացի այս բերկրառիթ լուրերից, այսօր նաեւ մեր զօրապետի հարսանեկան հանդէսն է։ Ահա ինչ որ նա բարեհաճում է յայտարարել տալ։ Դղեակի բոլոր սեղանատները բաց են, եւ ամէն մարդ կատարեալ ազատութիւն ունի խնջոյք անելու ներկայ ժամը հինգից, մինչեւ որ զանգը տասնմէկը զարկի։ Աստուած օրհնի Կիպրոս կղզին եւ մեր ազնիւ զօրապետ Օթելլոյին։

[Exits.]

][][

## ACT II. SCENE III.

A Hall in the Castle. Othello, Desdemona, Cassio and Attendants enter.

### OTHELLO.

Սիրելի Միքայէլ, հսկիր այս գիշեր պահակի վրայ։ Պէտք է ինքներս այնպէս չափ դնենք մեր

զուարճութեան, Որ պատշաճութեան սահմանից չանցնի։

CASSIO.
Արդէն Եագոյին հրահանգ տրուած է, Բայց այնուհանդերձ ինքս էլ իմ աչքով կը վերահսկեմ։

OTHELLO.
Եագոն պարկեշտ է։ Գնա՛, Միքայէլ, բարի գիշեր քեզ, Եւ վաղն առաւօտ կանուխ եկ՝ խօսենք։ [To Desdemona.] Երբ առքը եղաւ, մերն է եւ բերքը, Եւ շահը պէտք է բաժանենք մեր մէջ։ Բարի գիշեր։

[As Othello, Desdemona and the Servants exit Iago enters.]

CASSIO.
Ա՛հ, բարեւ Եագո, գնանք պահականոց։

IAGO.
Դեռ ժամանակը չէ, տեղակալ. ժամը տասն էլ չկայ։ Դէզդեմոնայի սիրուց է, որ մեր զօրապետը մեզ այսպէս վաղ արձակեց։ Մեղադրելի էլ չէ. տակաւին ոչ մի գիշեր չի զուարճացել նրա հետ, իսկ Դէզդեմոնան Իւպիտերին վայել պատառ է։

CASSIO.
Հրաշալի՛ կին է։

IAGO.
Եւ, խօսք եմ տալիս, զուարճասէր։

CASSIO.
Այո՛, շատ թարմ ու քնքուշ կին է։

IAGO.
Այն ի՜նչ աչքեր են, կարծես թէ շեփորով անձնատուր լինելու հրաւէր են փչում։

CASSIO.
Հրապուրիչ աչքեր ունի, բայց եւ այնպէս շատ համեստ։

IAGO.
Եւ երբ խօսում է, չէ՞ որ սիրոյ մարտակոչ է հնչեցնում։

CASSIO.
Կատարելութեան տիպարն է իսկապէս։

IAGO.
Լաւ, երջանկութի՛ւն նրանց առագաստին։ Եկէք, տեղակալ, մի գաւ գինի ունեմ, եւ այստեղ՝ դուրսը, մի քանի կիպրացի քաջ տղերք կան, որոնք ուզում են սեւ Օթելլոյի կենացը խմել։

CASSIO.
Այս գիշեր ո՛չ, սիրելի Եագո. իմ գլուխը խմիչքի կողմից շատ տկար եւ դժբախտ է։ Երանի թէ քաղաքավարութիւնը հիւրասիրելու մի ուրիշ միջոց հնարէր։

IAGO.
Բա՛հ, նրանք բարեկամ տղերք են. միայն մէկ բաժակ, ձեր տեղը ե՛ս կը խմեմ։

CASSIO.
Այս գիշեր միայն մէ՛կ գաւաթ եմ խմել, մէջն էլ խորամանկութեամբ ջուր էի խառնել, եւ ահա ինչ խռովութիւն է սարքել գլխիս մէջ։ Դժբախտաբար դա իմ տկարութիւնն է, եւ չեմ համարձակւում թուլութեանս վրայ նոր բեռ դնել։

IAGO.
Բա՛հ, մա՛րդ Աստծոյ, զուարճանալու գիշեր է։ Տղերքը շատ են փափագում։

CASSIO.
Որտե՞ղ են։

IAGO.
Այստեղ՝ դռանը, խնդրում եմ, ներս կանչէք նրանց։

CASSIO.
Լաւ, բայց շատ էլ հաւան չեմ։

[Exits.]

IAGO.
Թէ մէկ գաւաթ էլ ե՛ս գլխին կապեմ Այն բոլորի հետ, որ նա այս գիշեր խմել է արդէն, Տիրույուս շան պէս բարկացկոտ կը լինի եւ կռիւ փնտրող։ Այժմ իմ հիւանդ ապուշ Ռոդրիգոն, Որին սէրն այնպէս յիմարացրել է, Որ խելքի աստառն երես է շինել, Այս գիշեր արդէն Դէզդեմոնայի առողջութեանը Գաւեր է խմել եւ պէտք է գնա պահակ կանգնելու։ Երեք կիպրացի երիտասարդներ, ազնիւ, խրոխտ տղերք՝ Պատուի գործերում խիստ դիւրագրգիռ, Այս կռուող կղզու բոցն ու կրակը, Նոյնպէս այս գիշեր պահակելու են։ Նրանց գլուխն էլ լիք բաժակներով լաւ տաքացրել եմ։ Այժմ զինուորի այդ նախիրի մէջ Պէտք է Կասսիոյին մի բան անել տամ, Որ վիրաւորանք լինի այս կղզուն։ Ահա գալիս են։ Եթէ դէպքերն

Էլ աջակից լինեն իմ խորհուրդներին, Նաւս կը սուրայ թէ՛ յաջող կողմից եւ թէ՛ հոսանքից։

[Cassio, Montano and the Gentlemen enter followed by a Servant with wine.]

CASSIO.
Երկինքը վկա՛յ, մի ահագին գաւաթ արդէն խմեցրին ինձ։

MONTANO.
Չէ, հաւատա՛, մի պստիկ գաւաթ էր, կէս քառորդ չկար, զինուորի խօսք։

IAGO.
Գինի՛, հէ՛յ։ [Sings.]
And let me the cannikin clink, clink,
And let me the cannikin clink, clink:
A soldier's a man,
O, man's life's but a span,
Why then let a soldier drink.
Գինի՛, տղե՛րք։

CASSIO.
Երկինքը վկա՛յ, այս ի՜նչ սիրուն երգ է։

IAGO.
Անգլիայում եմ սովորել, այնտեղ իսկապէս կոնծել գիտեն, Ձեր դանիացին, ձեր գերմանացին, փորը կախ ընկած հոլանդացին, գինի՛, հէ՛յ, ոչինչ են ձեր անգլիացու մօտ։

CASSIO.
Իրա՞ւ անգլիացին խմելու մէջ այդքան զօրեղ է։

IAGO.
Բա՛հ, անգլիացին դեռ չտաքացած՝ դանիացին մեռել-պրծել է. անգլիացին դեռ չքրտնած՝ գերմանացին գետին է ընկել, անգլիացին նո՛ր գինի բերել կը տայ, երբ հոլանդացին կը սկսի փսխել։

CASSIO.
Զօրապետի կենացը՛։

MONTANO.
Եղիցի՛, տեղակալ, ձեռքդ դալա՛ր։

IAGO.
Ա՜խ, իմ սիրելի՜ Անգլիա։ [Sings.]

King Stephen was a worthy peer,
His breeches cost him but a crown;
He held them sixpence all too dear,
With that he call'd the tailor lown.
He was a wight of high renown,
And thou art but of low degree:
'Tis pride that pulls the country down,
Then take thine auld cloak about thee.

Գինի՜, հէ՜յ։

CASSIO.
Հա՜, այս երգը միւսից էլ լաւն է։

IAGO.
Ուզո՞ւմ ես նորից երգեմ։

CASSIO.
Ո՜չ, որովհետեւ, իմ կարծիքով, ով որ այդ տեսակ բաներ անի, նա անարժան է իր պաշտօնին։ Լաւ՜, ամէնքից վեր Աստուած կայ. հոգիներ կան, որ փրկուելու են, եւ հոգիներ կան, որ չեն փրկուելու։

IAGO.
Շատ ճիշտ է, տեղակալ։

CASSIO.
Ինչ որ ինձ է վերաբերում, - ամէն յարգանք զօրապետին եւ ամէն աստիճանաւորի, - ես յոյս ունեմ, որ փրկութեան արժանի եմ։

IAGO.
Ես էլ, տեղակալ։

CASSIO.
Այո՜, բայց ներողութի՜ւն, ո՜չ թէ ինձնից առաջ. նախ տեղակալը պէտք է փրկուի, յետոյ դրօշակիրը։ Թողնե՜նք այդ բաները, մեր գործին գնանք։ Աստուած մեր մեղքերին թողութիւն անի։ Պարոններ, մեր գործին նայենք։ Չկարծէք, պարոններ, թէ ես հարբած եմ. սա իմ դրօշակիրն է, սա իմ աջ ձեռքն է, սա էլ՝ իմ ձախը։ Հապա՜ տեսէք, որ հարբած չեմ. կարող եմ լաւ՜ կանգնել, լաւ՜ խօսել։

EVERYONE.
Հրաշալի՜։

CASSIO.
Դէ, որ այդպէս է, շատ լաւ. չկարծէք, ուրեմն, թէ ես հարբած եմ։

[Exits.]

MONTANO.
Գնանք հարթավայրը, պարոններ, գնանք, պահակներ կարգենք։

IAGO.
Տեսնո՞ւմ էք դրան, որ դուրս ելաւ այժմ։ Մի զինուոր է դա, որ պէտք է կանգնէր Կեսարի կողքին եւ հրաման անէր, հիմա նայեցէք իր մոլութեանը։ Ճիշտ զուգակշիռն իր արժանիքի, Մէկը միւսի չափ. ափսո՜ս այդ մարդը։ Շատ եմ վախենում, որ Օթելլոյի վստահութիւնը Դրա տկարութեան մի անբախտ ժամին Այս ամբողջ կղզին տակնուվրայ անի։

MONTANO.
Այդ բանը նրան շա՞տ է պատահում։

IAGO.
Նրա քնելու նախաբանն է այս, եւ քսանչորս ժամ անքուն կը մնայ, եթէ խմիչքը օրօրոցի պէս նրան չճօճի։

MONTANO.
Բայց լաւ կը լինէր, որ զօրապետին մի մարդ իմաց տար։ Գուցէ չի տեսնում, եւ նրա բարի բնաւորութիւնը Կասսիոյի դրսի յատկութիւններն է միայն նկատում Եւ վատ կողմերին չի նայում։ ճիշտ չէ՞։

[Rodrigo enters.]

IAGO.
[Aside to Rodrigo.] Ի՞նչ կայ, Ռոդրիգո. շու՜տ տեղակալի ետեւից հասիր։ Ռոդրիգոն դուրս է գնում։

[Rodrigo exits.]

MONTANO.
Շատ ցաւալի է, որ ազնիւ մաւրը Իր փոխանորդի ծանր պաշտօնը մէկին է յանձնել, Որ արմատացած մի ախտի տէր է. Պարկեշտ գործ կը լինէր մաւրին իմաց տալ։

IAGO.
Եթէ այս սիրուն կղզին էլ ինձ տան, չեմ անի ես այդ։ Կասսիոյին սրտանց սիրում եմ. իրաւ, շատ բան կը տայի՝ նրան այդ ախտից բուժելու համար։ Բայց սուս, ի՞նչ ձայն է։

[Voices from outside: "Help, help!" Cassio enters, pushing Rodrigo before him.]

CASSIO.
Ա՜յ դու գարշելի, ա՜յ դու անզգամ։

MONTANO.
Ի՞նչ է պատահել, տեղակալ։

CASSIO.
Մի փուչ կենդանի ինձ դաս տա՞յ. այնքան կը զարկեմ գլխին, որ ողորած շշի մէջ մտնի։

RODERIGO.
Ինձ՞ կը զարկես։

CASSIO.
Յոխորտո՞ւմ ես, անզգամ։

[Punches and kicks Rodrigo.]

MONTANO.
Ի սէր աստծոյ, սիրելի տեղակալ։ Խնդրում եմ, պարոն, ձեռք քաշէք։

CASSIO.
Բաց թող ինձ, այ մարդ, թէ ոչ՝ գանգդ կը փշրեմ։

MONTANO.
Գնա, գնա, դու հարբել ես։

CASSIO.
Ե՞ս եմ հարբել։ Մենամարտում են։

IAGO.
[To Rodrigo.] Հեռացիր, ասում եմ. դուրս գնա, հարայ տուր. «Ապստամբութի՜ւն»։ [Rodrigo exits.] Կացէ՜ք, տեղակա՜լ։ Ի սէր Աստծոյ, պարոններ։ Էհէ՜յ, օգնութի՜ւն ... Տեղակալ ... պարոն ... Մոնտանո՜... պարոն ...

օգնեցէ՜ք ... պարոններ ... Ա՜ռ քեզ պահակ։ [Shouts.] Զանգն ո՞վ է զարկում ... Դիաւոլո՜յ ... էհէ՜յ։ Հիմա ամբողջ քաղաքը ոտքի կը կանգնի։ Ի սէր Աստծոյ, տեղակալ, ձեռք վերցրէք։ Ամօթալի կը մնաք մինչեւ յաւիտեան։

[Othello and the servants enter.]

OTHELLO.
Ի՞նչ է պատահել այստեղ։

MONTANO.
Դժ-ժո՜խք, արիւնս գնում է դեռեւս։ Մահացու կերպով վիրաւորուած եմ։

OTHELLO.
Ձեռք քաշէք, էհէ՜յ, թէ ոչ՝ մեռած էք։

IAGO.
Ձեռք քաշէք, էհէ՜յ, տեղակալ... պարոն... Մոնտանո՜... պարոննե՜ր, մոռացե՞լ էք դուք թէ՜ պարտք, թէ՜ պաշտօն։ Ե՜տ, զօրապետը ձեզ հետ է խօսում։ Ե՜տ, ե՜տ, ամօ՜թ ձեզ։

OTHELLO.
էհէ՜յ, այս ի՞նչ է. ուրկի՞ց ծագեց այս։ Տաճի՞կ ենք դարձել. մե՞նք ենք մեզ անում, Ինչ որ երկինքը օսմանցիներին չթողեց անել։ Թէ քրիստոնեայի ամօթ կայ ձեր մէջ, Թողէք այդ յիմար, վայրենի կռիւը։ Ով առաջինը փորձի յագուրդ տալ իր կատաղութեան, Գլխի տէրը չէ. ով շարժուի, կ'ընկնի, Լռեցրէք իսկոյն այդ դժպհի զանգը. Դա վրդովում է կղզու հանգիստը։ Ի՞նչ կայ, պարոններ։ Դու, պարկեշտ Եագո, որ վշտից այդպէս մեռել ես դարձել, խօսիր, ճիշտն ասա, ո՞վ սկսեց այս. Երդուեցնում եմ քեզ քո սիրոյ վրայ։

IAGO.
Չգիտեմ։ Հիմա, հէնց այս րոպէիս Նրանք իրար հետ այնպէս հաշտ էին, այնպէս սիրալիր. Ինչ հարս ու փեսայ, երբ որ հանւում են պառկելու համար։ Եւ յետոյ, հէնց այժմ, որպէս թէ յանկարծ մի չար մոլորակ Մարդկանց խելագուրկ դարձրած լինէր, Սրերը ուղղած իրարու կրծքին՝ կռիւ են տալիս։ Չեմ կարող ասել, թէ այդ յիմար վէճն ինչպէս սկսուեց։ Երնե՜կ թէ ազնիւ պատերազմի մէջ երկու ոտքերս Կորցրած լինէի, որ չբերէին ինձ այստեղ վկայ։

OTHELLO.
Ասա, Միքայէլ, ինչպէ՞ս ինքդ քեզ այդքան մոռացար։

CASSIO.
Խնդրեմ, ինձ ներէք... չեմ կարող խօսել։

OTHELLO.

Ազնիւ Մոնտանո, դու սովոր էիր բարեկիրթ լինել. Եւ քո դեռահաս հանդարտութիւնը եւ լրջութիւնը Ողջ աշխարհ գիտէ, անուն ես շահել խելացի մարդկանց դատողութեան մէջ։ Այդ ինչպէ՞ս եղաւ. Որ աղարտեցիր բարի համբաւդ այդպիսի վարքով Եւ շռայլեցիր շքեղ անունդ, Որ գիշերային խռովարարի հռչա՞կ ստանաս։ Պատասխան տուր ինձ։

MONTANO.

Ազնիւ Օթելլո, սոսկալի կերպով վիրաւորուած եմ. Ձեր սպան, Եագոն, կարող է պատմել... Չպէտք է խօսեմ, ինձ նեղացնում է։ Նա ձեզ կը պատմի, ինչ որ ես գիտեմ, չգիտեմ սակայն, Թէ ես այս գիշեր մի վատ բան ասած կամ արած լինեմ։ Միայն թէ անձի հոգածութիւնը մոլութիւն սեպուի, Եւ պաշտպանուելը բռնի մեր վրայ յարձակուողի դէմ՝ Յանցանք համարուի։

OTHELLO.

Ա՛հ, երկի՜նք վկայ։ Արիւնս հիմա սկսում է իշխել Աւելի խոհեմ վարիչներիս վրայ, Եւ կիրքը, պայծառ դատողութիւնս մթնացնելով, Փորձում է ինքը ղեկավար դառնալ։ Հէնց որ ես յուզուեմ կամ այս բազուկը մի քիչ բարձրացնեմ, Ձեր լաւագոյնը կը զոհուի սաստիս։ Ասացէք տեսնեմ, Ինչպէ՞ս սկսուեց այս պիղծ կռիւը, ո՞վ պատճառ դարձաւ, Եւ ով այս բանում յանցաւոր դուրս գայ, Թէկուզ երկուորեակ եղբայրս լինի՝ միատեղ ծնուած, Ինձ հարկաւոր չէ։ Պատերազմական մի քաղաքի մէջ, Որ յուզուած է դեռ, եւ մարդկանց սրերն ահով դեռ լի են, Ներքին, տնային կռիւնե՞ր սարքել, Գիշերանց, այն էլ՝ պահականոցո՞ւմ, Ապահովութեան հէնց կենտրոնի՞ մէջ։ Հրէշաւո՛ր բան է։ Եագո, ո՞վ եղաւ առիթ տուողը։

MONTANO.

Եթէ ընկերի կամ թէ պաշտօնի կողմնապահութեամբ Ճշմարտութիւնից մի մազ աւելի կամ պակաս ասես, Ապա զինուոր չես։

IAGO.

Ինձ նեղը մի՛ դնիր։ Լաւ է՝ այս լեզուն իմ բերնից կտրեն, Քան թէ Կասսիոյին վնաս հասցնի, Բայց համոզուած եմ, որ ճիշտ խօսելս չի վնասի նրան։ Ահա՛, զօրապետ, Մոնտանոն եւ ես խօսակցում էինք, Յանկարծ մտնում է մի մարդ՝ «օգնութի՛ւն» աղաղակելով, Կասսիոն՝ ետեւից, սուրը դուրս քաշած, որ նրան զարկի։ Սա իսկոյն թռաւ Կասսիոյի առաջ, ուզեց կանգնեցնել. Իսկ ես վազեցի այն հարայ տուող մարդու ետեւից, Միգուցէ նա իր գոռում-գոչիւնով,- ինչպէս էլ եղաւ,- Սարսափ տարածի քաղաքի վրայ։ Նա, ոտքով արագ, ձեռքիցս փախաւ, Եւ ես ետ դարձայ՝ սրերի շաչիւն եւ զարկ լսելով, Նաեւ Կասսիոյի բարձրաձայն գոռալ եւ հայհոյելը, Ինչ որ նրանցից մինչեւ այս գիշեր դեռ չէի տեսել, Երբ որ ետ դարձայ, - որ շատ չտեւեց,- Ես նրանց գտայ դէմ առ դէմ զարկեր փոխանակելիս, Ճիշտ այն դիրքի մէջ, երբ որ ինքներդ նրանց զատեցիք։ Սրանից աւել ոչինչ չգիտեմ։ Բայց մարդը մարդ է, Ամենից լաւերն ստեպ կորցնում են իրենց գլուխը. Թէպէտեւ Կասսիոն, ճիշտ է, վատ վարուեց այս պարոնի հետ, Եւ յաճախ մարդիկ կատաղութեան մէջ նրա՛նց են զարկում, Որ միայն իրենց լաւն են ցանկանում,

Բայց պէտք է Կասսիոն այն փախած մարդուց Այնպիսի սաստիկ մի վիրաւորանք ստացած լինի, Որին համբերել չի կարողացել։

OTHELLO.
Գիտեմ ես, Եագո, Պարկեշտութիւնդ եւ դէպի ընկերդ ունեցած սէրդ Փոքրացնում են եղելութիւնը՝ Թեթեւացնելով Կասսիոյի մեղքը։ Եկ այստեղ, Կասսիո՛, Ես քեզ սիրում եմ, բայց այսուհետեւ դու իմ սպան չես։

[Desdemona enters.]

OTHELLO [cont.]
Մի տեսէ՛ք. ինչպէ՛ս իմ աչքի լոյսին քնից զարթեցրին։ [To Cassio.] Այնպէս անեմ քեզ, որ ուրիշներին օրինակ դառնաս։

DESDEMONA.
Ի՞նչ է պատահել։

OTHELLO.
Ամէն բան արդէն կարգի է դրուած, իմ անուշիկս։ Գնանք քնելու։ [To Montano.] Իսկ ձեր վէրքերին, պարոն, ես ինքս բժիշկ կը լինեմ։ Դուրս տարէք սրան։ Եագո, քաղաքին լաւ ուշ դարձրու եւ հանգստացրու այս անարգ կռուից վրդովուածներին։ Եկ, Դէզդեմոնա, զինուորի կեանքն է՝ կռուի շաչիւնից Ցնցուել եւ ցատկել բալասան քնից։

[All exit save Iago and Cassio.]

IAGO.
Վիրաւորուա՞ծ էք, ի՞նչ է, տեղակալ։

CASSIO.
Այո՛, եւ անբուժելի՛։

IAGO.
Աստուած ո՛չ անի։

CASSIO.
Անո՛ւնս, անո՛ւնս, անո՛ւնս։ Օ՜, անունս կ'որցրի, Էութեանս անմահական մասը կ'որցրի։ Եւ ինչ որ մնում է, անասնական է։ Անո՛ւնս, Եագո, անո՛ւնս։

IAGO.
Պատիւս վկա՛յ, ես էլ կարծեցի, թէ մի մարմնական վէրք էր ստացել, դա աւելի զգալի է, քան թէ անուան վէրքը։ Անուն ասածը մի անմիտ խաբէութիւն է, որ յաճախ շահւում է առանց արժանիքի եւ կորցւում է առանց յանցանքի։ Դուք ոչ մի կերպով ձեր անունը կորցրած չէք լինի, եթէ ինքներդ կորցրած չհամարէք։ Ի՞նչ ասել է, մա՛րդ, շատ միջոցներ կան զօրապետի սիրտը կրկին ձեռք բերելու։ Բարկութիւնիցն է, որ ձեզ առայժմ արձակեց, խոհեմութեան պատիժ է այդ, ոչ թէ ոխի, ինչպէս մարդը իր անմեղ շանը ծեծ է տալիս՝ մի գոռոզ առիւծի վախ ազդելու համար։ Աղաչեցէք նրան, եւ նա կը հաշտուի։

CASSIO.
Աւելի լաւ է՝ աղաչեմ, որ մէկ էլ երեսիս չնայի, քան թէ մի այնպիսի ազնիւ հրամանատարի գլխին ինձ պէս թեթեւսոլիկ, հարբեցող եւ անմիտ մի պաշտօնեայ կապեմ։ Գինովանա՞լ, թութակի պէս դո՞ւրս տալ, կռիւ՞ սարքել, մեծաբանե՞լ, հայհոյե՞լ, ինքս իմ շուաքի հետ դատարկախօսե՞լ։ Ո՛վ դու գինու աներեւոյթ ոգի, եթէ անուն չունես, որ քեզ ճանաչեն, թող քեզ դեւ՛ կոչենք։

IAGO.
Ո՞վ էր նա, որին սուր քաշած՝ հալածում էիք։ Ձեզ ի՞նչ էր արել։

CASSIO.
Չգիտեմ։

IAGO.
Կարելի՞ բան է։

CASSIO.
Շատ բաներ են միտս գալիս, բայց որոշ ոչինչ. կռուեցինք, բայց ինչո՞ւ, չգիտեմ։ Օ՛, տէ՛ր Աստուած, մարդ էլ ինքն իր ձեռքով թշնամուն իր բերանը կը մտցնի՞, որ խելքը գողանայ, մարդ էլ ուրախութեամբ, զուարճութեամբ, խնջոյքով եւ կեցցէներով ինքն իրեն անասունի՞ կը փոխարկի։

IAGO.
Բայց հիմա հոգ չէ, բաւական լաւ էք։ Ինչպէ՞ս եղաւ, որ սթափուեցիք։

CASSIO.
Դեւ գինովութիւնը բարեհաճեց իր տեղը տալ Դեւ բարկութեանը։ Մի պակասութիւն ինձ ուղարկում է ուրիշ մէկի մօտ, որ բոլորովին ինքս իմ աչքին արհամարհելի դառնամ։

IAGO.
Չէ՛, դուք շա՛տ խստաբարոյ էք։ Թէեւ ժամանակը, տեղը եւ երկրի պայմանները նկատի առնելով՝ շատ պիտի ուզէի, որ այս բանը պատահած չլինէր, բայց հիմա, որ եղածը եղած է, աշխատեցէք մի կերպ

միջից դուրս գալ։

CASSIO.
Եթէ հիմա գնամ խնդրեմ, որ պաշտօնս ինձ ետ տայ, նա ինձ կ'ասի՝ դու հարբեցող ես։ Եթէ այնքան բերաններ ունենայի, որքան Հիդրան, այդ տեսակ մի պատասխան բոլորը մեկէն կը փակէր։ Նախ՝ շէնք-շնորհքով մարդ լինել, քիչ յետոյ մի խելագար եւ ապա մի անասո՜ւն։ Օ՜, զարմանալի՜ է։ Ամէն աւելորդ բաժակ անիծուած բան է, եւ բովանդակութիւնը դեւ է։

IAGO.
Չէ՜, չէ՜։ Լաւ գինին լաւ սրտակից ընկեր է, եթէ մարդ հետը խելացի կերպով վարուի, այդքան մի՜ վատաբանէք նրան։ Բայց, տեղակալ, կարծեմ թէ գիտէք, որ ես ձեզ սիրում եմ։

CASSIO.
Փորձով տեսայ, բարեկամ։ Ես՝ հարբա՞ծ։

IAGO.
Մա՜րդ Աստծոյ, ամէն մարդու կարող է պատահել, որ մի անգամ գինովանայ։ Նոյնը եւ ձեզ հետ։ Հիմա ասեմ, թէ ինչ պէտք է անէք։ Մեր զօրապետը հիմա մեր զօրապետուհին է։ Այն պատճառով եմ այդպէս ասում, որ Օթելլոն իր խելքն ու միտքը բոլորովին տուել է իր կնոջ յատկութիւններին եւ շնորհներին, եւ բան ու գործ չունի, եթէ ոչ՝ նրանց դիտել, եւ զննել եւ պաշտել։ Գնացէք, ձեր սիրտը բացէք Դէզդեմոնային. աղաչեցէք, պաղատեցէք, եւ նա ձեզ կ'օգնի, որ ձեր պաշտօնը ետ ստանաք։ Նա այնքան պատրաստակամ, բարեսիրտ, սիրալիր եւ առատաշնորհ բնաւորութեան տէր է, որ իր բարութեան համար պակասութիւն կը համարի, եթէ աւելի չտայ, քան ինչ որ նրանից խնդրում են։ Այս յօդը, որ խզուել է ձեր եւ նրա ամուսնու մէջ, աղաչեցէք, որ նա կապկպի։ Ես իմ բոլոր ունեցածը գրաւ կը դնեմ մի դրօշի դէմ, որ ձեր սիրոյ մէջ գոյացած այս պատռուածքը աւելի ամուր կը կպչի, քան առաջ։

CASSIO.
Լաւ խորհուրդ էք տալիս։

IAGO.
Հաւատացէք, դա բխում է իմ սիրոյ անկեղծութիւնից եւ պարկեշտ բարեկամութիւնից։

CASSIO.
Հաստատ գիտեմ։ Վաղն առաւօտ կանուխ կը գնամ, Դէզդեմոնայից կը խնդրեմ, որ իմ գործը իր ձեռքն առնի։ Եթէ այս կերպով գլուխ չգայ, պէտք է յոյսս կտրեմ իմ բախտից։

IAGO.
Իրաւունք ունէք։ Բարի գիշեր, տեղակալ. պէտք է հսկելու գնամ։

CASSIO.
Բարի գիշեր, պարկեշտ Եագո։

[Exits.]

IAGO.
Հիմա ո՞վ կ'ասի, թէ իմ արածը սրիկայութիւն է, Երբ իմ խորհուրդը անկեղծ, պարկեշտ է. Եւ շատ բանաւոր, եւ իսկապէս էլ միակ միջոցն է՝ Մաւրի շնորհը կրկին շահելու։ Շատ դիւրին բան է Ինքնին տրամադիր Դէզդեմոնային իր կողմը գրաւել Որեւէ պարկեշտ մի աղաչանքով։ Նա ստեղծուած է այնպէս բարեւէտ, ինչպէս տարերքը. Եւ ի՞նչ չի կարող մաւրից ստանալ, Թէկուզ դա լինէր ուրանալ իր սուրբ մկրտութիւնը, Մեղքի քաւութեան բոլոր նշաններն ու դրոշմները։ Եւ մաւրի հոգին այնպէս կապուած է իր կնոջ սիրով, Որ Դէզդեմոնան կարող է նրան կապել, արձակել, Իր ուզածն անել, ինչպէս կամենայ նրա քմայքը, Իբր Աստուած խաղալ իր մարդու տկար դատողութեան հետ։ Ինչպէ՞ս, ուրեմն, սրիկա՞յ եմ ես, Երբ որ Կասսիոյին խորհուրդ եմ տալիս ա՛յն ուղին ընտրել, Որ ճիշտ տանում է դէպ իր օգուտը։ Ո՜վ դժոխային դիւաբանութիւն, Երբ սատանաները սաստիկ սեւ մեղքեր ուզում են սադրել, Նախ հրապուրում են երկնային դէմքով, ինչպէս ես այժմ։ Այնինչ մէկ կողմից այս պարկեշտ խենթը Դեզդեմոնայից կը խնդրի իրեն բարեխօս լինել, Եւ նա մաւրի մօտ թունդ կը միջնորդի, Ես էլ միւս կողմից մաւրի ականջին այս թոյնը կ'ածեմ, Թէ նա իր մարմնի տենչի համար է, Որ ջանք է անում Կասսիոյին բերել։ Որքան աւելի նա ճիգ գործ դնի յօգուտ Կասսիոյի, Այնքան իր վարկը մաւրի մօտ կ'ընկնի, Այս կերպով նրա անմեղութիւնը կուպր կը շինեմ Եւ նրա սրտի հէնց բարութիւնից մի ցանց կը հիւսեմ, Որ բոլորին էլ որոգայթ ձգի։

[Roderigo enters.]

IAGO [cont.]
Ի՞նչ կայ, Ռոդրիգո։

RODERIGO.
Երեւի ես այս որսորդութեան մէջ վազում եմ ոչ թէ իբրեւ որսկան շուն, այլ միայն նրա համար, որ հաչելով ձայն տամ։ Դրամս գրեթէ վերջացրի։ Այս գիշեր էլ պատուակա՛ն ծեծ կերայ, եւ կարծեմ արդիւնքն այն է լինելու, որ մի քիչ փորձառութիւն ձեռք բերած կը լինեմ։ Եւ այսպէս, դատարկ գրպանով եւ մի քիչ աւելի լիքը գլխով կը վերադառնամ Վենետիկ։

IAGO.
Որքա՜ն թշուառ են անհամբեր մարդիկ։ Ո՞ր վէրքն է բուժուել, եթէ ոչ միայն աստիճանաբար։ Մարդիկ, հո՛յ գիտես, խելքով են գործում, ոչ թէ դիւթելով. Խելքն էլ ձգձգող ժամանակի հետ պէտք է յարմարուի։ Ի՞նչ, բանդ լաւ չէ՞, Կասսիոն քեզ ծեծե՞ց։ Լաւ, բայց փոխարէն այդ մի քիչ ծեծի Դու էլ Կասսիոյին վռնդել տուիր։ Շատ բան է աճում արեգակի տակ, Բայց ամէն պտուղ, որ առաջ ծաղկի, առաջ կը հասնի։ Մի քիչ համբերիր։ Տես, լուսացել է։ Զբօսանք ու գործ երկար ժամերը կարճացնում են։ Գնա,

մտիր տուն, գնա, ուր որ քեզ տեղ են յատկացրել. Գնա, ասում եմ։

[Rodrigo exits.]

IAGO [cont.]
Երկու բան էլ կայ, որ պէտք է անեմ։ Պէտք է որ կինս իր տիրուհու մօտ բարեխօս լինի, Կասսիոյի համար։ Կը ստիպեմ նրան, որ այդպէս անի։ Իսկ այդ միջոցին ես մաւրին կ'առնեմ, մէկդի կը քաշեմ, եւ ճի՛շտ, երբ Կասսիոն Դէզդեմոնային խնդրելիս լինի Ներս կը մտցնեմ։ Հա՜, ձեւը գտայ. ո՛չ դանդաղութեամբ Գործը փչացնենք, ո՛չ էլ պաղութեամբ։

[Exits.]

][][

ACT III. SCENE I.
Cyprus. Before the Castle. Cassio enters with some Musicians.

CASSIO.
Եկէ՛ք, վարպետնե՛ր, այստեղ նուագեցէք։ Ձեր նեղութիւնը լաւ կը վարձատրեմ. Մի կարճ բան լինի. «Բարի լոյս, զօրապետ»։ Երաժշտութիւն։

[A Joker enters.]

JOKER.
Էդ ի՞նչ է, վարպետներ, ձեր գործիքները միթէ՞ Նապոլիից են գալիս, որ էդպէս քթից են խօսում։

MUSICIAN I.
Ինչպէ՞ս, պարոն, ինչպէ՞ս։

JOKER.
Ասէք, խնդրեմ, դրանք քամու գործիքներ են, չէ՞։

MUSICIAN I.
Ի հարկէ, պարոն, ի՞նչ ասել կ'ուզի։

JOKER.
Դէ որ այդպէս զռռում են, պոչ էլ կ'ունենան։

MUSICIAN I.
Ի՞նչ պոչ։

JOKER.
Պարզ բան է, շատ քամու գործիքներ գիտեմ, որոնցից մի պոչ կայ կախուած։ Բայց, վարպետներ, ահա ձեզ փող։ Զօրապետը էնքան հաւանեց ձեր մուզիկը, որ խնդրում է, Աստծոյ սիրուն, այդ աղմուկը դադարեցնէք։

MUSICIAN I.
Լաւ, պարոն, էլ չենք ածի։

JOKER.
Եթէ կարող էք էնպէս ածել, որ ձէնը իսկի դուրս չգայ, սկսէք նորից, բայց մեր զօրապետը, ինչպէս ասում են, մուզիկ լսելու շատ մեծ փափագ չունի։

MUSICIAN I.
Չենք կարող, պարոն։

JOKER.
Ուրեմն զուռնաներդ դրէք տոպրակներիդ մէջ եւ հայդէ՛։ Ինչու որ՝ ես պէտք է գնամ, հեռացէ՛ք, չքացէք օդի մէջ, հայդէ՛։ Երաժիշտները գնում են։

CASSIO.
Ականջ դիր, պարկեշտ բարեկամ։

JOKER.
Ականջ չեմ կարող դնել, բարեկամ, բայց կարող եմ ձեզ լսել։

CASSIO.
Խնդրեմ, բաց թողնես այդ բառախաղերը։ Առ քեզ այս փոքրիկ ոսկին։ Եթէ այն տիկինը, որ զօրապետի կնոջ մօտն է լինում, արդէն վեր է կացել, ասա նրան, թէ Կասսիո անունով մէկը խնդրում է նրա հետ խօսել։ Կանէ՞ս, չէ՞։

JOKER.
Այո, պարոն, վեր է կացել, եթէ դէպի էս կողմ վար գայ, ձեր ասածը նրան կը յայտարարեմ։

CASSIO.
Խնդրեմ, բարեկամ։

[As the Joker exits Iago enters.]

CASSIO [cont.]
Բարեւ ձեզ, Եագո։

IAGO.
Ուրեմն՝ այս գիշեր անկողին չէ՞ք մտել։

CASSIO.
Ո՛չ, լոյս էր արդէն, երբ բաժանուեցինք։ Ես ինձ թոյլ տուի մի մարդ ուղարկել ներս՝ կնոջդ մօտ։ Աղաչանքս այն է, որ մի միջոց տայ, եւ առաքինի Դէզդեմոնային կարէնամ տեսնել։

IAGO.
Հէնց այս րոպէիս կ'ուղարկեմ ձեզ մօտ։ Ես էլ իմ կողմից մի բան կը հնարեմ, Որ մաւրին առնեմ եւ մէկդի տանեմ, Որպէսզի ձեր գործն ու ասուլիսը անխափան լինի։

CASSIO.
Շատ շնորհակալ եմ։

[Iago exits.]

CASSIO [cont.]
Երբեք ես այսքան բարի ու պարկեշտ մի ֆլորենտիացի Դեռ չեմ ճանաչել։

[Emilia enters.]

EMILIA.
Բարեւ, տեղակալ։ Ցաւում եմ, որ ձեզ այդպէս անախորժ բան է պատահել։ Բայց հոգ չէ, շուտով կարգի կը դրուի։ Մաւրն ու իր կինը այդ մասին էին հէնց այժմ խօսում։ Տիրուհիս սաստիկ պաշտպանում է ձեզ, Իսկ մաւրն ասում է, թէ նա, որին դուք վիրաւորել էք, Այստեղ՝ Կիպրոսում, շատ ազգականներ եւ համբաւ ունի, Եւ ինքն ստիպուած խոհեմութիւնից, Պէտք է անպատճառ ձեզ հեռու պահի։ Բայց նա պնդում է, թէ սիրում է ձեզ Եւ կարիք չունի ուրիշ միջնորդի, Բացի սեփական իր համակրանքից, Եւ հէնց առաջին պատեհ առիթը ձեռքից չի փախցնի Ձեր պաշտօնը ձեզ ետ տալու համար։

CASSIO.
Լաւ, բայց խնդրում եմ, Եթէ կարծում էք, որ անյարմար չէ եւ կարելի է, Մի առիթ տաք ինձ, որ երկու րոպէ Դէզդեմոնային Առանձին տեսնեմ։

EMILIA.
Ներս եկէք, խնդրեմ։ Ես ձեզ կը տանեմ մի տեղ, ուր ազատ Ձեր սրտի ուզածն ասել կարէնաք։

CASSIO.
Շնորհապարտ եմ ձեզ։

[Exits.]

][][

ACT III. SCENE II.
Cyprus. A Room in the Castle. Othello, Iago and a Gentleman enter.

OTHELLO.
Այս նամակները նաւապետին տուր եւ ասա նրան, որ յարգանքներս յայտնի սենատին։ Այդ անելուց ետ եկ եւ ինձ գտիր պատնէշի վրայ, Այնտեղ ման կը գամ։

IAGO.
Շատ բարի, տէր իմ։

OTHELLO.
Պարոններ, կ'ուզէ՞ք այն ամրութիւնը տեսնելու գնանք։

GENTLEMAN.
Կը սպասաւորենք ձերդ յարգութեան։

[All exit.]

][][

ACT III. SCENE III.
Cyprus. The Garden of the Castle. Desdemona, Cassio and Emilia enter.

DESDEMONA.
Դե՛հ, միամիտ կաց, սիրելի Կասսիո, Ձեռքիցս եկածը կ'անեմ քեզ համար։

EMILIA.
Արէք, տիրուհի։ Իրաւ, ամուսինս այնպէս տխրել է, Որ կարծես գործը իրենը լինի։

DESDEMONA.
Ին՛չ ազնիւ մարդ է։ Միամիտ կացէք, ես այնպէս կ'անեմ, որ տէրս եւ դուք Առաջուայ նման բարեկամ լինէք։

CASSIO.
Բարեսի՛րտ տիկին, Միքայէլ Կասսիոն կայ եւ կը մնայ ձեր անկեղծ ծառան, Ին՛չ էլ գլխին գայ։

DESDEMONA.
Այո, լաւ գիտեմ։ Շնորհակալ եմ։ Գիտեմ, ամուսնուս սրտանց սիրում էք. հին ծանօթներ էք։ Եւ վստահ եղէք, նա այնքան միայն հեռու կը մնայ, Որքան որ պէտք է իբր խոհեմութիւն։

CASSIO.
Այո՛, բայց, տիկին, Այդ խոհեմութիւնը կարող է երկա՛ր, շա՛տ երկար տեւել Կամ թէ այնպիսի ջրիկ եւ անհիւթ կերակրով սնուել, Կամ դիպուածներից նոր ծնունդ առնել, Որ ես, բացակայ եւ տեղս ուրիշին տրուած լինելով, Իմ զօրապետը կարող է սէրս եւ ծառայութիւնս Իսպառ մոռանալ։

DESDEMONA.
Չէ, միամիտ կաց. Այս Էմիլիայի ներկայութեանը քեզ խօսք եմ տալիս, Որ քո պաշտօնը ետ կտրուի քեզ։ Ապահով եղիր։ Երբ բարեկամի մի բան խոստանամ, Խօսքս կը պահեմ մինչեւ վերջին կէտը։ Էլ հանգստութիւն չեմ տայ ամուսնուս, Քունը կը կտրեմ, մինչն մեղմանայ, Այնքան կը խօսեմ, մինչեւ սպառեմ համբերութիւնը, Նրա անկողինը դպրոց կը շինեմ, Եւ ճաշարանը՝ խոստովանարան, Ամէն խնդրի մէջ Կասսիոյի գործը կը խառնեմ անվերջ։ Ուրեմն, Կասսիո, գնա, ուրախ կաց, Քո միջնորդուհին պատրաստ է մեռնել, քան դատդ լքել։

[Othello and Iago enter.]

EMILIA.
Տիկին, տէրս եկաւ։

CASSIO.
Տիկին, թոյլ տուէք արձակուրդ խնդրել։

DESDEMONA.
Ինչո՞ւ, կաց եւ տես՝ ինչպէ՛ս եմ խօսում։

CASSIO.
Ո՛չ այժմ, տիկին։ Ինձ վատ եմ զգում Եւ աննպաստ եմ սեփական դատիս։

DESDEMONA.
Լաւ, այնպէս արա, ինչպէս ուզում ես։

[Cassio exits.]

IAGO.
Սա ինձ դուր չեկաւ։

OTHELLO.
Հը՞ ի՞նչ ես ասում։

IAGO.
Ոչինչ, ազնիւ տէր. կամ եթէ... չգիտեմ, թէ ինչ...

OTHELLO.
Կասսիոն չէ՞ր միթէ, որ իմ կնոջից հիմա բաժանուեց։

IAGO.
Կասսիո՞ն, ո՛չ, տէր իմ, չեմ կարող կարծել, Որ նա այս ձեւով դուրս կը սողոսկէր յանցաւորի պէս, Հէնց որ ձեզ տեսնէր։

OTHELLO.
Նա էր, վստահ եմ։

DESDEMONA.
Ինչպէ՞ս ես, հոգիս։ Հէնց այս րոպէիս ես խօսում էի մի խնդրողի հետ, Որ քո շնորհից զրկուած լինելով՝ հալւում-մաշւում է։

OTHELLO.
Ու՞մն ես ակնարկում։

DESDEMONA.
Ումը՞, Կասսիոյին, քո տեղակալին։ Իմ բարի տէրս։ Եթէ շնորհք ունեմ կամ կարողութիւն սիրտդ շարժելու, խնդրում եմ՝ իսկոյն հաշտուես նրա հետ։ Թէ ճիշտ չլինի, որ նա իսկապէս նուիրուած է քեզ եւ մեղանչել է անգիտութիւնից, ոչ գիտակցօրէն, Ես անհմուտ եմ մի պարկեշտ երես ճանաչելու մէջ։ Աղաչում եմ քեզ, ետ կանչիր նրան։

OTHELLO.
Նա՞ էր այստեղից դուրս գնացողը։

DESDEMONA.
Այո՛, նա ինքն էր, Այնպէս ընկճուած, որ իր տխրութեան մի մասն ինձ թողեց. Որ իր հետ ցաւեմ։ Քաղցրիկ սիրեկան, ետ կանչիր նրան։

OTHELLO.
Ո՛չ այժմ, անուշիկ, մի ուրիշ անգամ։

DESDEMONA.
Բայց շուտո՞վ։

OTHELLO.
Այո՛, աւելի շուտով, երբ դու ես խնդրում։

DESDEMONA.
Այս գիշեր ընթրիքի՞ն։

OTHELLO.
Ո՛չ, այս գիշեր ո՛չ։

DESDEMONA.
Լաւ, վաղը ճաշի՞ն։

OTHELLO.
Ես վաղը ճաշին տանը չեմ լինի։ Գնդապետներին պէտք է հանդիպեմ բերդաքաղաքում։

DESDEMONA.
Դէ լաւ, ուրեմն վաղը ընթրիքին, Կամ երեքշաբթի առաւօտ, կամ թէ նոյն օր կէսօրին, Կամ թէ գիշերը, կամ չորեքշաբթի։ Խնդրեմ, օրն ասա, բայց ո՛չ աւելի, քան թէ երեք օր։ Հաւատացնում եմ. շատ է զղջացել. Եւ նրա մեղքը, մեր սովորական դատելու ձեւով,- Թէեւ, ասում են, կռուի ժամանակ Պէտք է ամէնից ընդունակները օրինակ դառնան,- Գրեթէ մի մեղք չէ, որ արժանի լինի մասնաւոր պատժի։ Ե՞րբ կարող է գալ, ասա, Օթելլո։ Ինքս ինձ ասում եմ, Ի՞նչ կայ աշխարհում, որ ինձնից խնդրես, եւ ես քեզ մերժեմ։ Կամ թէ այդ ձեւով տատամսած կանգնեմ։ Ի՞նչ մեծ բան է որ... սա նոյն Կասսիոն է Որ միշտ քեզ հետ էր, երբ գալիս էիր սիրախօսելու։ Եւ որքա՜ն անգամ, երբ ես քեզ մի քիչ բամբասում էի, Քո կողմն էր բռնում, եւ հիմա որքա՜ն դժուար է դարձել Նրան ետ բերել։ Հաւատացնում եմ, շատ բան կ'անէի։

OTHELLO.
Բաւ է, խնդրում եմ։ Թող գայ, երբ ուզի։ Ոչինչ չեմ կարող մերժել քեզ։

DESDEMONA.
Ին՛չ խօսք, դա մի շնորհ չէ։ Դա այնպէս բան է, որպէս թէ խնդրեմ, որ ձեռնոց հագնես, Կամ սննդարար կերակուր ուտես, կամ քեզ տաք պահես, Կամ մի բան անես սեփական անձիդ եւ օգտիդ համար։ Չէ՛, եթէ մի օր մի բան աղերսեմ, Որով ուզենամ քո սէրը փորձել, Դա պիտի լինի խի՛ստ ծանրակշիռ, խի՛ստ դժուար մի բան, Որի շնորհելը սարսափելի է։

OTHELLO.
Ոչինչ չեմ մերժի, Որի փոխարէն ես էլ քեզանից այս բանն եմ խնդրում. Մի քանի րոպէ առանձին թող ինձ։

DESDEMONA.
Ի՞նչ անեմ, մերժե՞մ։ Ո՛չ, մնաս բարով, սիրելի տէրս։

OTHELLO.
Գնաս բարով, հոգիս, ես իսկոյն կը գամ։

DESDEMONA.
Գնանք, Էմիլիա։ Թող այնպէս լինի, ինչ հաճոյ է քեզ։ Ինչ էլ որ լինես, հնազանդ եմ ընդմիշտ։

[Desdemona and Emilia exit.]

OTHELLO.
Անգի՜ն արարած, դեւն առնի հոգիս, թէ քեզ չեմ սիրում, Եւ երբ չսիրեմ, ապա քաոսը վերադարձել է։

IAGO.
Ազնիւ տէր։

OTHELLO.
Ի՞նչ է, Եագո։

IAGO.
Երբ տիկնոջ տունը յաճախում էիք, Միքայէլ Կասսիոն գիտէ՞ր ձեր սէրը։

OTHELLO.
Այո՛, սկզբից գիտէր մինչեւ վերջ։ Ինչո՞ւ ես հարցնում։

IAGO.
Ոչինչ, իմ մտքի գոհացման համար. Մի վատ բան չկայ։

OTHELLO.
Ի՞նչ մտքիդ, Եագո։

IAGO.
Ես չգիտէի, թէ նա տիկնոջ հետ ծանօթ է եղել։

OTHELLO.
Այո՛, ծանօթ էր եւ յաճախ նա էր միջնորդը մեր մէջ։

IAGO.
Իրա՞ւ։

OTHELLO.
Իրա՞ւ, հա, իրա՛ւ, միթէ՞ դրա մէջ մի բան ես տեսնում։ Միթէ՞ պարկեշտ չէ։

IAGO.
Պարկե՞շտ, տէր իմ։

OTHELLO.
Պարկեշտ, հա, պարկեշտ։

IAGO.
Որքան ես գիտեմ, նա պարկեշտ մարդ է։

OTHELLO.
Ի՞նչ ես մտածում։

IAGO.
Մտածո՛ւմ, տէր իմ։

OTHELLO.
Մտածո՛ւմ, տէր իմ։ Երկինքը վկա՛յ, արձագանքի պէս ասածս է կրկնում։ Կարծես թէ մտքում մի ճիւաղ ունի, Այնպէս սոսկալի, որ կարելի չէ ուրիշին ցոյց տալ։ Անպատճառ մի բան ուզում ես ասել։ Հէնց այս րոպէիս, երբ Կասսիոն գնաց իմ կնոջ մօտից, Այսպէս ասացիր. «Սա ինձ դուր չեկաւ»։ Ինչը՞ դուր չեկաւ։ Եւ երբ ասացի, թէ նա իմ սիրոյ բոլոր ընթացքում խորհրդակիցս էր, ասացիր՝ իրա՞ւ։ Յետոյ ունքերդ այնպէս կծկեցիր եւ ժողովեցիր, Կարծես ահռելի մի միտք թաղեցիր ուղեղիդ մէջը։ Թէ ինձ սիրում ես, ցոյց տուր ինձ միտքդ։

IAGO.
Տէր իմ, դուք գիտէք, որ սիրում եմ ձեզ։

OTHELLO.
Կարծեմ սիրում ես, եւ որովհետեւ գիտեմ, թէ սիրտդ Լեցուն է սիրով եւ պարկեշտութեամբ, Եւ ամէն մի բառ ասելուց առաջ չափում-կշռում ես, Հէնց այդ պատճառով այդ ընդհատումներդ Ինձ է՛լ աւելի երկիւղ են ազդում։ Այդ տեսակ բաներ մի կեղծ ու խարդախ սրիկայի մէջ Շատ սովորական ձեւացումներ են, Բայց մի մարդու մէջ, որ ուղղամիտ է, Դրանք թաքնուած մեղադրանքներ են՝ սրտից դուրս բխած, Որ կիրքը զսպել չի կարողանում։

IAGO.
Ինչ որ Կասսիոյին վերաբերում է, Կարող եմ երդուել, որ պարկեշտ մարդ է։

OTHELLO.
Ես էլ եմ կարծում։

IAGO.
Բայց պէտք է մարդիկ հէնց այն լինէին, ինչ որ թւում են. Կամ նրանք որ չեն, շատ լաւ կը լինէր, որ չթուային։

OTHELLO.
Այո՛, ամէն մարդ պէտք է ա՛յն լինէր, ինչ որ թւում է։

IAGO.
Ես էլ այդ ձեւով կարծում եմ՝ Կասսիոն մի պարկեշտ մարդ է։

OTHELLO.
Չէ՛, այդ բանի մէջ մի ուրիշ բան կայ։ Խնդրեմ, ասա՛ ինձ, որպէս թէ ինքդ քեզ հետ ես խօսում Եւ որոճում ես մտմտուքներդ։ Տուր ամենավատ մտածումներիդ ամենավատ բառեր։

IAGO.
Բայց ո՛չ, ներեցէք, սիրելի տէր իմ, Թէեւ ամէն կերպ ծառայութիւններ պարտական եմ ձեզ, Բայց պարտ չեմ մի բան, որի մէջ նոյնիսկ գերին ազատ է։ Մտքե՞րս յայտնել։ Վա՛հ, գուցէ ստոր, սխալ մտքեր են։ Ո՞ր պալատն է այն, ուր անարգ բաներ ներս չսողոսկեն, Ո՞վ ունի մի կուրծք այնպէս անապակ, Ուր կեղտոտ խոհեր ատեան չկազմեն Եւ օրինաւոր խորհուրդներին կից դատի չբազմեն։

OTHELLO.
Եագո, դաւաճան եղած կը լինես բարեկամիդ դէմ, Եթէ կասկածես, որ մարդիկ նրան անիրաւում են, Եւ հեռու պահես մտածումներդ նրա ականջից։

IAGO.
Բայց աղաչում եմ ... գուցէ սխալ են ենթադրածներս, եւ պէտք է ասեմ, թէ մի ախտ է դա իմ բնութեան մէջ՝ Յանցաւոր բաներ տեսնել ամէն տեղ։ Եւ իրաւ՛, յաճախ Կասկածոտ միտքս մեղք է համարում բաներ, որ մեղք չեն։ Խնդրում եմ, որ ձեր խոհեմութիւնը դեռ ուշ չդարձնի Մի մարդու վրայ, որ այնքան յոռի կարծիքներ ունի, Եւ ոչ էլ նրա ցրիւ, անհաստատ նկատածները Իզուր ձեզ համար գլխացաւ շինէք։ Դա ո՛չ պատշաճ է ձեր անդորրութեան, ո՛չ էլ ձեր օգտին, Ո՛չ իմ մարդկութեան եւ պարկեշտութեան, ո՛չ էլ իմ խելքին, Որ ձեզ իմացնեմ իմ խորհուրդները։

OTHELLO.
Ի՞նչ ես ուզում ասել։

IAGO.
Բարի անունը, ազնիւ տէր, մարդու ... եւ կնոջ համար Ամէնից ազնիւ գոհարն է հոգու։ Ով որ քսակս գողանայ, քիչ բան գողացած կը լինի։ Մի ինչ է, ոչինչ։ Իմս էր, նրանն է, Եւ հազարների գերին է եղել։ Բայց ով ինձանից անունս շորթի, Մի բան կը շորթի, որ բնաւ նրան չի հարստացնի, Իսկ ինձ իսկապէս կ'աղքատացնի։

OTHELLO.
Երկի՜նքն է վկայ, պէտք է իմանամ մտածումներդ։

IAGO.
Չէք կարող, նոյնիսկ եթէ իմ սիրտը ձեր ձեռքում լինէր, Եւ չէք իմանայ, քանի իմս է նա։

OTHELLO.
Հա՛...

IAGO.
Օ՛, զգո՛յշ, տէր իմ, խանդոտութիւնից։ Դա այն ճիւաղն է կանաչ աչքերով, Որ ինքն է ստեղծում այն կերակուրը, որով սնւում է։ Երանելի է այն ամուսինը, Որ լաւ գիտակ է իր անբախտութեան, Սակայն չի սիրում իրեն խաբողին։ Բայց, ո՜հ, ինչպիսի՛ դժոխք րոպէներ պէտք է ապրի նա, Որ թէ՛ սիրահար, թէ՛ խանդահար է, Ով կասկածում է, բայց այնուհանդերձ սիրում է սաստիկ։

OTHELLO.
Օ՛, թշուառութի՜ւն։

IAGO.
Աղքատ ու գոհը հարուստ է եւ շա՛տ։ Բայց ով անդադար աղքատանալու երկիւղի մէջ է, Այն մարդու համար անսահման գոյքն էլ այնպէս աղքատ է, Ինչպէս ձմեռը։ Ողորմա՛ծ երկինք, Փրկիր նախանձից

իմ բոլոր տոհմին։

OTHELLO.
Բայց ի՞նչ պէտք է դա։ Կարծում ես, թէ ես նախանձոտ մարդու կեանք կը վարէի՞, Ամէն նոր լուսնի նոր կասկածներով կը հետեւէի՞։ Երբե՛ք։ Մի անգամ կասկած յղանալ՝ իսկոյն վճռել է։ Դու ինձ այծի հետ կարող ես փոխել, Եթէ այդպիսի փքուն ու փչած ենթադրութիւններ Իմ հոգու համար բան ու գործ շինեմ քո ասած ձեւով։ Մարդ չի կարող ինձ խանդոտ դարձնել՝ Ասելով, թէ կինս գեղեցկուհի է, սիրում է ճաշկերոյթ եւ ընկերութիւն, ազատ է խօսում, Գիտէ լաւ երգել, նուագել, պարել։ Երբ կինը լաւ է, դրանք բոլորը լաւութիւններ են։ Եւ ոչ էլ իմ քիչ արժանիքներն են, Որ ամենափոքր վախն են ինձ ազդում, Կամ կասկած տալիս, թէ նա ինձանից օտարացել է։ Աչք ունէր, տեսաւ եւ ինքն ընտրեց ինձ։ Ո՛չ, Եագո, պէտք է կասկածից առաջ մի բան նկատեմ. Կասկածից յետոյ պէտք է հաստատեմ, Եւ երբ հաստատուի, ոչինչ չի մնայ, Հեռո՛ւ ինձանից եւ՛ սէր, եւ՛ նախանձ։

IAGO.
Շատ լաւ, ուրախ եմ։ Ուրեմն հիմա ազատ կարող եմ Անձնուիրութիւնս ու սէրս ցոյց տալ։ Քանի որ հիմա պարտ եմ ճիշտ խօսել, ահա խորհուրդս։ Ես դեռ չեմ խօսում ապացոյցներից. Աչքներդ բացէք ձեր կնոջ վրայ։ Զննեցէք նրան, թէ Կասսիոյի հետ ինչպէ՛ս է վարւում։ Նայեցէք այսպէս՝ ո՛չ խանդոտի պէս, ո՛չ էլ միամիտ։ Ես չէի ուզի, որ ձեր վեհանձն եւ ազնիւ սիրտը Հէնց իր բնածին բարութեան համար շահագործուի։ Աչքներդ բացէք, մեր երկրի բարքերն ինձ լաւ ծանօթ են։ Վենետիկում կանայք չեն քաշւում երբեք երկնքին ցոյց տալ Իրենց ախտերը, միայն թէ ծածկեն ամուսիններից. Նրանց մօտ խիղճը ոչ թէ չանելն է, այլ թաքցնելը։

OTHELLO.
Այդպէ՞ս ես կարծում։

IAGO.
Իր հօրը խաբեց, ձեզ հետ պսակուեց. Երբ ցոյց էր տալիս, թէ դողդողում է եւ զարհուրում է Ձեր ակնարկներից, ուղղակի նրանց սիրահարուած էր։

OTHELLO.
Այո՛, այդպէս է։

IAGO.
Ուրեմն հասկացէք։ Նա, որ լինելով այդքան դեռահաս, այդպէս լաւ կեղծեց Եւ հօր աչքերը այնպէս կուրացրեց,- Խեղճը կարծում էր՝ կախարդութիւն կար,- Բայց մատ եմ անում։ Շատ աղաչում եմ, որ ներող լինէք Ձեզ այսքան սաստիկ սիրելուս համար։

OTHELLO.
Եագո, քեզ ընդմիշտ երախտապարտ եմ։

IAGO.
Տեսնում եմ, որ այս ձեզ մի քիչ յուզեց։

OTHELLO.
Ո՛չ, բնաւ, բնաւ։

IAGO.
Իրաւ, կարծում եմ։ Յոյս ունեմ, որ դուք այս ասածներս Իմ սիրուց բխած պիտի համարէք։ Բայց նկատում եմ, որ շատ էք յուզուել։ Պէտք է ձեզ խնդրեմ, որ իմ ասածներն այնքան ծիգ չտաք. Որ շօշափելի փաստի ձեւ առնեն, Ոչ էլ աւելի ծաւալ տաք նրանց, քան մի կասկածի։

OTHELLO.
Միամիտ եղիր։

IAGO.
Թէ այդպէս անէք, սիրելի տէրս, Խօսքերս այնպէս վատ հետեւանքի կարող են հասնել, Որ շատ հեռու է իմ մտածումից։ Միքայէլ Կասսիոն լաւ բարեկամս է... Տէր իմ, տեսնում եմ, որ վրդովուած էք։

OTHELLO.
Ո՛չ, վրդովուած չեմ։ Չեմ կարող կարծել, որ Դէզդեմոնան առաքինի չէ։

IAGO.
Շա՜տ ապրի այդպէս, դուք էլ շա՜տ ապրէք այդ գաղափարով։

OTHELLO.
Սակայն եւ այնպէս գուցէ բնութիւնը, ճամփից շեղուելով...

IAGO.
Հա՛, բանն էլ այդ է. ինչպէս, օրինակ,-թողէք պարզ խօսեմ,- Մերժել իր ձեռքը այնքան շատերին՝ Իր երկրի, գոյնի եւ աստիճանի փեսացուներին, Մինչդեռ տեսնում ենք, որ բնութեան մէջ Միշտ էլ նմանը նմանն է սիրում... Փո՜ւհ, մարդ կարող է գարշելի մի տենչ հոտոտել այդտեղ, Կեղտոտ հակումներ, անբնական մտքեր։ Բայց ներեցէք ինձ. Ոչ թէ ուղղակի ակնարկութիւնս նրա մասին է, Թէեւ վախ ունեմ, որ նրա կամքը, Վերադառնալով իր աւելի լաւ դատողութեանը, Ձեզ իր երկրացի տղամարդկանց հետ սկսի չափել Եւ գուցէ զղջայ։

OTHELLO.
Մնաս բարով, մնաս բարով։ Եթէ մի նոր բան նկատես, լուր տուր։ Կնոջդ էլ ասա, որ նա էլ դիտի։ Հեռացիր, Եագո։

IAGO.
[Begins to exit.] Թոյլ տուէք, տէր իմ։

OTHELLO.
Ես ինչո՞ւ պէտք է ամուսնանայի։ Այս պարկեշտ մարդը շատ բան է տեսնում եւ շատ բան գիտէ, Անշուշտ աւելի, քան թէ յայտնում է։

IAGO.
[Returning.] Տէ՛ր իմ, կ'ուզէի հայցել ձեզանից, Որ այս խնդիրը սրանից աւել չպրպտէիք, Թողէք ժամանակին։ Թէեւ յարմար է, Որ Կասսիոն կրկին իր գործին կանչուի, Քանի որ այնպէս ընդունակ է նա իր պաշտօնի մէջ, Բայց եթէ հաճէք առայժմ նրան հեռացած պահել, Այդպէս կարող էք լաւ զննել նրան եւ այն միջոցը, որ գործ կը դնի, Տեսնել, թէ ձեր կինն արդեօք շատ սաստիկ, անհամբեր կերպով Չի՞ ստիպի արդեօք, որ նրան կրկին պաշտօնի կանչէք. Դրանից շատ բան յայտնի կը լինի։ Մինչեւ այդ, տէր իմ, Դուք խիստ յոռետես համարեցէք ինձ կասկածներիս մէջ։ Եւ իսկապէս էլ լուրջ երկիւղ ունեմ, որ հէնց այդպէս եմ, Եւ ձեր կնոջը անմեղ հաշուեցէք, աղաչում եմ ձեզ։

OTHELLO.
Լաւ, մի վախենա, խոհեմ կը լինեմ։

IAGO.
Նորից խնդրում եմ՝ արձակուրդ շնորհէք։

[Exits.]

OTHELLO.
Արտաքոյ կարգի պարկեշտ մարդ է սա եւ հմուտ մտքով. Գիտէ մարդկային ամէն մի գործի բուն էութիւնը։ Եթէ համոզուեմ, որ բազէս կրկին վայրիացել է, Թէկուզ իմ սրտի լարերից լինեն նրա կապերը, Դարձեալ սուլելով կ'արձակեմ նրան ես հողմերն ի վար՝ Գնա իր բախտին, իրեն որս ճարի։ Գուցէ պատճառը այն է, որ սեւ եմ Կամ այն, որ չունեմ այն խօսակցութեան փափուկ ձեւերը, Որոնք յատուկ են բանսարկուներին, Կամ այն, որ արդէն իջնում եմ դէպի ծերութեան ձորը, Թէպէտեւ ոչ շատ, որ նա հեռացաւ։ Այո՛, խաբուած եմ, եւ միակ ճարս նրան ատելն է։ Անիծեա՛լ լինի ամուսնութիւնը, Որ այդ փափկասուն արարածներին մերը չկարծենք, Երբ պատկանում են միմիայն իրենց ախորժակներին։ Լաւ է՝ գորտ լինեմ, ապրեմ նկուղի արտաշնչութեամբ, Քան թէ գիտենամ, որ մի անկիւն կայ իմ սիրածի մէջ Ուրիշի համար։ Եւ սակայն դա է մեծերի բախտը. Նրանք նուազ են առանձնաշնորհուած, քան ստոր մարդիկ. Դա անխուսափելի ճակատագիր է, ճիշտ, ինչպէս մահը։ Այս երկճիւղանի անբախտութիւնը վիճակւում է մեզ Հէնց աշխարհ գալիս։

[Desdemona and Emilia enter.]

OTHELLO [cont.]
Թէ սա կեղծ լինի, ապա երկինքը իրեն է ծաղրում։

DESDEMONA.
Ու՞ր ես, սիրելիս։ Ճաշը պատրաստ է, եւ քո հրաւիրած կղզեցիները քեզ են սպասում։

OTHELLO.
Պարսաւելի եմ։

DESDEMONA.
Ինչո՞ւ է ձայնդ այդպէս նուաղել։ Հիւա՞նդ ես, ի՞նչ է։

OTHELLO.
Մի ցաւ եմ զգում այստեղ՝ ճակատիս։

DESDEMONA.
Անքնութիւն է, ոչինչ, շուտ կ՛անցնի։ Թող ամուր կապեմ, մէկ ժամում կ՛անցնի։

OTHELLO.
Այդ թաշկինակը փոքր է. թող կենայ։

[He removes the handkerchief, which slips and falls.]

OTHELLO [cont.]
Գալիս եմ քեզ հետ։

DESDEMONA.
Սաստիկ ցաւում եմ, որ անհանգիստ ես։

[Othello and Desdemona exit.]

EMILIA.
Ինչ լաւ, որ գտայ այս թաշկինակը, Մաւրի առաջին յիշատակն է սա Դէզդեմոնային։ Շոշորդ ամուսինս ինձ հարիւր անգամ ասել, խնդրել է, Որ ես գողանամ, բայց իմ տիրուհին Այնպէս սիրում է այս յիշատակը, Օթելլոն նրան երդուեցրել է, որ լաւ պահպանի, Որ նա շարունակ ձեռքին է պահում եւ համբուրում է, հետն էլ խօսում է։ Պէտք է բանուածքը օրինակել տամ Եագոյի համար։ Ի՞նչ բանին է պէտք, Աստուած է գիտակ, ոչ ես։ Ես միայն Ուզում եմ նրա քմահաճոյքը կատարած լինել։

[Iago enters.]

IAGO.
Վա՜հ, ի՞նչ ես անում այստեղ մէն-մենակ։

EMILIA.
Լաւ, մի՛ մրթմրթա։ Եագո, քեզ համար մի բան եմ պահել։

IAGO.
Ինձ համար մի բա՞ն։ Է՛հ, ի՞նչ կը լինի։

EMILIA.
Հա՛։

IAGO.
Մի յիմար կին։

EMILIA.
Հա՛, հա՛, հէնց այդքա՞ն։ Ի՞նչ կը տաս, եթէ այն թաշկինակը...

IAGO.
Ո՛ր թաշկինակը։

EMILIA.
Վա՛հ, Օթելլոյի առաջին ընծան. Այն, որ շարունակ ստիպում էիր, որ գողանայի։

IAGO.
Հը՞, գողացե՞լ ես։

EMILIA.
Ո՛չ, երկինք վկայ, անզգուշութեամբ ձեռքից վար ձգեց, Ես էլ, պատահմամբ այնտեղ լինելով, գետնից վերցրի։ Տե՛ս, տե՛ս։

IAGO.
Ին՛չ լաւ աղջիկ ես։ Ինձ տուր, խնդրում եմ։

EMILIA.
Բայց ինչի՞դ է պէտք, որ այնքան սաստիկ յորդորում էիր, Որ գողանայի։

IAGO.
[Grabbing the handkerchief.] Դա քո ի՞նչ գործն է։

EMILIA.
Եթէ կարեւոր բանի համար չէ, ետ տուր։ Խե՛ղճ տիկին։ Կը խելագարուի, երբ որ նկատի, թէ կորցրել է։

IAGO.
Այնպէս ձեւացրու, որ դու չես տեսել, սա ինձ շատ է պէտք։ Գնա, հեռացիր։

[Emilia exits.]

IAGO [cont.]
Պէտք է այս ձգեմ Կասսիոյի տունը, որ ինքը գտնի։ Օդի պէս թեթեւ, աննշան բաներ խանդոտի աչքին Սուրբ Գրքի նման ուժեղ փաստեր են։ Սա շատ բան կ'անի։ Մաւրը իմ թոյնից արդէն փոխւում է։ Վատ կասկածները իրենց բնոյթով այն թոյներիցն են, Որոնք սկզբում բնաւ համ չունեն, Բայց երբ արեան վրայ մի քիչ ազդում են, Այրում են, ինչպէս ծծումբի հանքեր։ Հա՛, հա՛, չասացի՞։ Ահա գալիս է։

[Othello enters.]

IAGO [cont.]
Գնա՛, ո՛չ մեկոն եւ ո՛չ մանդրագոր, Ո՛չ էլ աշխարհի բոլոր թմրաբեր օշարակները Կարող են կրկին ետ տալ երէկուայ քո անուշ քունը։

OTHELLO.
Ի՞նձ դաւաճանել, հա՛, հա՛։

IAGO.
Վահ, ի՞նչ է. թողէք, զօրապետ։

OTHELLO.
Կորի՛ր, դու՛րս կորիր։ Տանջանքի անուին կապել ես դու ինձ։ Երդւում եմ, լաւ է՝ շատ խաբուած լինել, Քան քիչ գիտենալ։

IAGO.
Ինչպէ՞ս թէ, տէր իմ։

OTHELLO.
Նրա լրբութեան գողացած ժամերից ի՞նչ լուր ունէի. Ես չէի տեսնում, չէի մտածում, դա ինձ չէր նեղում։ Յաջորդ գիշերը լաւ քնում էի, անհոգ եւ ուրախ, Կասսիոյի պաչերը չէի տեսնում նրա շրթունքին։ Երբ

որ մի մարդուց մի բան գողանան, եւ նա այդ չզգայ, Թող անգէտ մնայ, եւ նրա համար գողութիւն չկայ։

IAGO.
Ցաւում եմ, որ դուք այդպէս էք խօսում։

OTHELLO.
Օ՜, ես երջանիկ եղած կը լինէի, Եթէ ընդհանուր զօրաբանակը, բանուոր եւ այլն, Ամէն ոք նրա անուշ մարմինը ճաշակած լինէր, Միայն թէ ինքս լուր չունենայի։ Իսկ այժմ, մնա՜ս բարով, ընդմի՜շտ, անդո՜րր միտք, Մնաս բարով, սրտի գոհունակութի՜ւն, Մնացէ՜ք բարով, ցցունքով գնդէ՜ր, մե՜ծ պատերազմներ, Որ դարձնում էք փառասիրութիւնն առաքինութիւն. Մնացէ՜ք բարով, վրնջո՜ւն նժոյգ, շռնչո՜ւն շեփոր, Ոգեվա՜ռ թմբուկ եւ ականջ պատռող սրինգ սրածայն, Դրօշա՜կ արքունի, ամէն սարք ու կարգ, Պերճութի՜ւն, հանդէ՜ս եւ շո՜ւք փառահեղ պատերազմների, Եւ դո՜ւք, մահասփիւռ գոռ մեքենանե՜ր, բիրտ կոկորդներում Դուք, որ կեղծիքն էք անմահ Դիոսի ահեղ որոտման, Մնացէ՜ք բարով։ Այլեւս Օթելլոն զբաղմունք չունի։

IAGO.
Կարելի՞ բան է։

OTHELLO.
Դու, թշուառական, պէտք է հաստատես, որ կինս բոզ է. Լաւ իմացիր այդ, պէտք է ակներեւ ապացոյց տաս ինձ, Թէ ոչ, երդւում եմ յաւիտենական հոգուս արժէքով, Լաւ էր քեզ համար շուն ծնուած լինէր, Քան թէ հաշիւ տալ իմ զարթնած ոխին։

IAGO.
Բանն այստե՞ղ հասաւ։

OTHELLO.
Ցոյց տուր ինձ աչքով կամ գոնէ այնպէս հաստատիր դու այդ, Որ ցուցման վրայ մի տեղ չմնայ, մի կեռ չմնայ՝ Մէկ հատիկ կասկած կախ տալու համար։ Թէ ոչ՝ վա՜յ կեանքիդ։

IAGO.
Բայց, ազնի՜ւ տէրս...

OTHELLO.
Թէ ուզեցել ես նրան զրպարտել եւ ինձ չարչարել, Էլ մի՜ աղօթիր, բա՜ց թող այլեւս ամէն ապաշաւ, Սոսկանք կուտակիր սոսկանքի գլխին, Գործեր կատարիր, որ երկինքը լա, եւ երկիրն ապշի՜. Քանզի սրանից աւելի մեծ մեղք Չես կարող բարդել մեղքերիդ վրայ։

IAGO.

Օ՜, ողորմութի՜ւն, երկի՜նք, փրկիր ինձ։ Մարդ չէ՞ք դուք, ի՞նչ է, խելք ու միտք չունէ՞ք եւ հոգի չունէի՞ք, Դե՛հ, Աստուա՛ծ ձեզ հետ, առէք պաշտօնս։ Ի՜նչ տխմարն եմ ես, Որ ինքս իմ ձեռքով պարկեշտութիւնս ինձ մեղք եմ շինում։ Հրէշաւո՛ր աշխարհ, տե՛ս, տե՛ս, ո՛վ աշխարհ, Ի՜նչ վտանգաւոր բան է ուղղամիտ եւ պարկեշտ լինել։ Շնորհակալ եմ շահածիս համար, Էլ այս րոպէից ոչ մի բարեկամ չկայ ինձ համար, Երբ սէրն այսպիսի փորձանք է ծնում։

OTHELLO.

Ո՛չ, կա՛ց, պէտք է դու պարկեշտ մարդ լինես։

IAGO.

Աւելի լաւ էր՝ խոհեմ լինէի։ Պարկեշտութիւնը մի խելագար է, Որ իր շահածը ինքն է կորցնում։

OTHELLO.

Երկինքը վկա՛յ, Մէկ մտածում եմ, որ կինս անմեղ է, մէկ՝ որ անմեղ չէ։ Մէկ մտածում եմ, որ դու պարկեշտ ես, մէկ՝ որ պարկեշտ չես։ Ապացոյց պէտք է։ Նրա անունը, Որ Դիանայի դէմքից անբիծ էր, Այժմ մրոտ է, այժմ սեւ է նա հէնց իմ դէմքի պէս։ Եթէ աշխարհում պարան, թոյն, դաշոյն, կրակ ու գետ կայ, Ես չեմ հանդուրժի։ Պէտք է համոզուեմ։

IAGO.

Տէր իմ, տեսնում եմ, որ բուռն կիրքը ձեր սիրտն ուտում է։ Սաստիկ զղջում եմ, որ ե՛ս այդ բանը ձեր առաջ դրի։ Ի՞նչ է, կ'ուզէի՞ք համոզուած լինել։

OTHELLO.

Ոչ թէ կ'ուզէի, այլ պահանջում եմ։

IAGO.

Եւ կարելի է, բայց ինչպէ՞ս, տէր իմ, ինչպէ՞ս համոզուէք, Ի՞նչ է, կ'ուզէի՞ք իբր վերատեսուչ բերան բաց արած՝ Նայել, թէ նրան ինչպէս են...

OTHELLO.

Օ՜, դեւ՜ ու դժոխք։

IAGO.

Բայց սաստիկ դժուար կը լինէր, կարծեմ, Նրանց սարքել տալ այդ տեսարանը։ Գետինը մտնե՛ն, եթէ մարդկային ուրիշ աչքեր էլ, Բացի իրենցից, տեսնեն, երբ նրանք իրար վրայ են։ Էլ ի՞նչ, ուրեմն, ինչպէ՞ս, ուրեմն, ի՞նչ պիտի ասեմ, Ինչպէ՞ս ձեզ համար համոզում բերեմ։ Թէկուզ այծերից աւելի տռփոտ լինէին նրանք, Կապիկներից տաք, ջեռցած գայլերից աւելի կրքոտ Եւ գինովցած տգիտութիւնից աւելի տխմար, Դարձեալ չէք կարող ձեր աչքով տեսնել։ Բայց, ասում եմ ձեզ, եթէ

յանցանքի երեւոյթները, Զօրեղ յարակից պարագաներով, Որ ուղիղ տանում եւ ճշմարտութեան դուռն են հասցնում, Ձեզ կը համոզեն, լաւ, կը համոզուէք։

OTHELLO.
Տուր կենդանի փաստ, որ ինձ խաբում է։

IAGO.
Շատ էլ չեմ սիրում ես այդ պաշտօնը. Բայց քանի որ այժմ այս բանում այսքան առաջ եմ մղուել՝ Դրդուած իմ յիմար պարկեշտութիւնից եւ անմիտ սէրից, Կը գնամ մինչեւ վերջ։ Քանի օր առաջ ես պառկած էի Կասսիոյի կողքին Եւ տառապելով ատամնացաւից՝ քունս չէր տանում։ Մարդիկ կան՝ ոգով այնպէս թուլաջիղ, Որ քնի մէջ էլ խօսում են իրենց գործերի վրայ. Այդպիսի մէկն էլ հէնց այս Կասսիոն է։ Նա քնած տեղը այսպէս էր ասում. «Քաղցրիկ Դէզդեմոնա, Թող զգոյշ լինենք, ծածկենք մեր սէրը»։ Եւ յետոյ, տէր իմ, նա ձեռքս բռնեց եւ պինդ ոլորեց. Ասաց. «Ա՜խ, հոգիս», եւ յետոյ այնպէս պինդ համբուրեց ինձ, Կարծես ուզում էր ամէն մի համբոյր, Որ բուսած լինէր շրթունքիս վրայ, արմատից պոկել։ Յետոյ իր ազդրը դրեց զիստիս վրայ, հառաչանք հանեց, Կրկին համբուրեց եւ յետոյ ասաց. «Անիծուած լինի այն բախտը, որ քեզ մաւրին վիճակեց»։

OTHELLO.
Հրէշային բան է, հրէշային բան է։

IAGO.
Բա՜հ, երազ էր դա։

OTHELLO.
Բայց ապացոյց է մի նախկին դէպքի. Շատ վատ նշան է, թէպէտեւ երազ։

IAGO.
Եւ դա կարող է ուժ տալ թերեւս ուրիշ փաստերի, Որոնք թոյլ լինեն իբրեւ ապացոյց։

OTHELLO.
Կը բրդե՜մ նրան։

IAGO.
Չէ՛, խոհեմ եղէք։ Դեռ յայտնի չէ մեզ, որ բան է եղել, Գուցէ տակաւին նա անմեղ լինի։ Բայց այս ասացէք. Մի ելակներով նախշած թաշկինակ չէ՞ք տեսել երբեք Ձեր կնոջ ձեռքին։

OTHELLO.
Հէնց մի այդպիսին ինքս եմ ընծայել. Դա իմ առաջին տուած պարգեւն էր։

IAGO.
Չէի իմանում, բայց մի այդպիսին, - եւ հաստատ գիտեմ, որ ձեր կնոջն է, - ես այսօր տեսայ Կասսիոյի ձեռքին. երեսն էր սրբում։

OTHELLO.
Եթէ այն լինի...

IAGO.
Այն, կամ ուրիշը, որ ձեր կնոջն է, Դա էլ նոր փաստ է փաստերի վրայ՝ ձեր կնոջ ընդդէմ։

OTHELLO.
Ա՛խ, այն ստրուկը քառասուն հազար կեանք թէ ունենա՛ր. Մէկը շատ քիչ է, շատ տկար բան է իմ վրէժի համար։ Հիմա տեսնում եմ, որ ճշմարիտ է։ Ինձ նայիր, Եագո, բոլոր խօլ սէրս փչում եմ հողմին։ Գնա՛ց։ Զարթնի՛ր, սեւ՛ վրէժ, քո փոս նկուղից։ Սէ՛ր, յանձնիր թագդ, սրտաշէն գահդ բռնակալ ոխին։ Ուռի՛ր, կո՛ւրծք, ուռիր, քո կրած բեռնով, իժերի խայթով։

IAGO.
Դեռ հանդարտ կացէք։

OTHELLO.
Օ՛հ, արիւն, արի՛ւն։

IAGO.
Դեռ համբերեցէք, ասում եմ. գուցէ ձեր միտքը փոխէք։

OTHELLO.
Ոչ, Եագո, երբե՛ք։ Պոնտեան ծովի պէս, Որի սառցային բռնի հոսանքը Երբե՛ք չի տեսել յետադարձ ծփանք, Այլ դիմում է շեշտ դէպի Պրոպոնտիկ եւ Հելլեսպոնտես, Իմ արիւնախանձ մտածումներն էլ ուժգին ընթացքով Չպէտք է երբեք դէպի ետ նայեն Եւ ետ ընկրկեն դէպի խոնարհ սէր, Մինչեւ ընդարձակ եւ լայն վրէժը կուլ տայ բոլորին։ Այժմ, այն բիւրեղ երկինքը վկա՛յ, Ի պատիւ իմ այս սրբազան ուխտի՝ երդում եմ անում։

[They kneel.]

IAGO.
Դեռ մի՛ վեր կենաք։ Վկայ եղէք ինձ, մշտավա՛ռ լոյսեր. Ո՛վ տարերք, որ մեզ շրջապատում էք, Վկայ եղէք դուք, որ Եագոն այստեղ ուխտում է ձօնել Իր խելքի, ձեռքի եւ սրտի բոլոր ունակութիւնը Իր խաբուած տիրոջ ծառայութեանը։ Թող նա հրամայի, եւ հնազանդելը խղճի պարտք է ինձ, Ի՛նչ արիւնահեղ գործ էլ որ լինի։

[They stand.]

OTHELLO.
Ողջունում եմ սէրդ Ոչ թէ ընդունայն շնորհակալութեամբ, Այլ սիրայօժար ընդունելութեամբ եւ իսկոյն եւեթ քեզ գործ եմ յանձնում, Երեք օրուայ մէջ պէտք է լուր բերես, թէ Կասսիոն մեռաւ։

IAGO.
Բարեկամս մեռաւ, եղաւ ձեր կամքը, Բայց խնայեցէք ձեր կնոջ կեանքը։

OTHELLO.
Դժո՛խք, լիրբ բոզը։ Եկ առանձնանանք։ Ես պէտք է գնամ, մի միջոց գտնեմ Սիրուն դիւուկին շուտ սպանելու։ Այսուհետեւ դու ես իմ տեղակալը։

IAGO.
Ձեր անձնուէրը մինչեւ յաւիտեան։

[They exit.]

][][

ACT III. SCENE IV.
Cyprus. Before the Castle. Desdemona, Emilia and the Joker all ener.

DESDEMONA.
Գիտե՞ս, տղայ, թէ տեղակալ Կասսիոյին որտե՞ղ կարելի է գտնել։

JOKER.
Ոչ մի տեղ։

DESDEMONA.
Ինչո՞ւ, մարդ։

JOKER.
Հոյ չի՞ կորել, որ գտնուի։

DESDEMONA.
Ձեռք վերցրու, ուր է բնակւում։

JOKER.
Թէ որ ասեմ, ո՞ւր է բնակւում, պէտք է սուտ ասեմ։

DESDEMONA.
Սրա խօսքերից բան դուրս կը գա՛յ։

JOKER.
Ինչո՞ւ չէ. էն, որ չեմ իմանում, որտեղ է բնակւում։ Թէ որ նրա համար բնակարան հնարեմ, ասեմ՝ էստեղ է բնակւում կամ էնտեղ, էդ կ'ըլնի սուտ ասել։

DESDEMONA.
Կարո՞ղ ես հարցնել եւ մի կարգին պատասխան բերել ինձ։

JOKER.
Հա՛, նրա համար ողջ աշխարհքին քրիստոնէական կը սովորացնեմ. այսինքն՝ հարցեր կը տամ եւ պատասխան կը ստանամ։

DESDEMONA.
Գնա, նրան գտիր եւ ասա՝ շուտ գայ այստեղ։ Ասա՝ ամուսնուս նրա մասին համոզել եմ եւ յոյս ունեմ, որ ամէն բան կարգի կը դրուի։

JOKER.
Էդ բանը տղամարդու կարողութիւնից դուրս չի ուրեմն կը փորձեմ անել։

[Exits.]

DESDEMONA.
Էմիլիա, թաշկինակս որտե՞ղ պէտք է կորցրած լինեմ։

EMILIA.
Չգիտեմ, տիկին։

DESDEMONA.
Հաւատացնում եմ, աւելի լաւ էր՝ Կրուզադոներով լեցուն քսակս կորցրած լինէի։ Թէ ազնիւ մաւրս բարեմիտ չլինէր եւ զերծ այնպիսի նուաստութիւնից, Որով շաղուած են նախանձոտները, հէնց այս կը բաւէր Նրան վատ բաներ մտածել տալու։

EMILIA.
Նախանձոտ մարդ չէ՞։

DESDEMONA.
Ո՞վ, նա՞։ Կարծեմ թէ իր երկրի արեւն Ամէն այդպիսի մաղձոտութիւններ քամել է նրանից։

EMILIA.
Տեսէք, գալիս է։

[Othello enters.]

DESDEMONA.
Ձեռք չեմ վերցնի, մինչեւ Կասսիոյին ետ կանչել չտամ, Ինչպէ՞ս ես, տէրս։

OTHELLO.
Լաւ եմ, տիկինս։ [Aside.] Օ՜, ի՞նչ դժուար է կեղծաւորուելը։ Իսկ դու ինչպէ՞ս ես, Դէզդեմոնա։

DESDEMONA.
Լաւ, բարի տէրս։

OTHELLO.
Ձեռքդ տուր տեսնեմ։ Այս ձեռքը, տիկին, շատ խոնաւ ձեռք է։

DESDEMONA.
Դեռ չի պառաւել, դեռ ցաւ չի տեսել։

OTHELLO.
Սա ցոյց է տալիս տարփոտ բնութիւն, բաշխասէր մի սիրտ. Տաք, տաք եւ տամուկ։ Այս ձեռքիդ համար Ազատութիւնը վնասակար բան է, մենացում է պէտք, Ծոմ, աղօթք, պատիժ եւ ճգնութիւններ։ Այստեղ մի ջահէլ քրտնաթոր դեւ կայ, Որ սովորաբար շուայտանում է։ Լաւ ձեռք է, բա՜ց ձեռք։

DESDEMONA.
Իրաւունք ունես այդպէս ասելու, Քանզի այդ ձեռքն էր, որ սիրտս տուեց։

OTHELLO.
Շատ առատ ձեռք է։ Հին ատեն սիրտն էր ձեռքի տուողը, Բայց մեր հիմակուայ զինանշանը ձեռքն է, ոչ սիրտը։

DESDEMONA.
Ես այդ բաներից ոչինչ չգիտեմ։ Տեսնե՛նք, խոստո՜ւմդ։

OTHELLO.
Ի՞նչ խոստում, ճուտիկ։

DESDEMONA.
Մարդ եմ ուղարկել՝ Կասսիոն գայ այստեղ եւ խօսի քեզ հետ։

OTHELLO.
Մի շատ խիստ հարբուխ նեղացնում է ինձ, Թաշկինակդ տուր։

DESDEMONA.
Ահա, սիրելիս։

OTHELLO.
Իմ ընծայածը։

DESDEMONA.
Մօտս չէ հիմա։

OTHELLO.
Ինչպէ՞ս, մօտդ չէ՞։

DESDEMONA.
Իրաւ, ոչ, տէր իմ։

OTHELLO.
Դա շատ վատ բան է։ Այդ թաշկինակը մի եգիպտուհի տուել էր մօրս։ Մի կախարդ կին էր, որ գիտէր կարդալ մարդկանց մտքերը։ Նա մօրս ասել էր, որքան որ պահի այդ թաշկինակը, Դա սիրոյ հմայք կը բաշխի նրան, Եւ հօրս սիրտը կապուած կը լինի նրա սիրովը, Բայց եթէ կորցնի կամ ուրիշին տայ, Հայրս կը սկսի զզուել նրանից, Եւ նրա տենչը նոր հրապուրանքներ կը սկսի փնտրել։ Մայրս մեռնելիս ինձ տուեց, ասաց, որ եթէ բախտը Ինձ կին շնորհի, ես էլ նրան տամ։ Այդպէս էլ արի։ Ուրեմն զգոյշ կաց. Աչքիդ լոյսի պէս գուրգուրա վրան։ Եթէ կորցնես կամ ուրիշին տաս, Դա մի այնպիսի կորուստ կը լինի, Որին ոչ մի բան չի հաւասարուի։

DESDEMONA.
Իրա՞ւ ես ասում։

OTHELLO.
Հաւատացնում եմ։ Այդ հիւսուածքի մէջ կախարդութիւն կայ. Մի սիբիլլուհի, որ երկու հարիւր արեւի շրջան Հաշուել էր արդէն այս աշխարհի մէջ, Մարգարէական իր մոլուցքի մէջ կերպասն է հիւսել,

Սրբազան որդներ մետաքսն են նիւթել, Ներկը շինուած է մումիայի հիւթից, Որ այն վհուկը կոյս աղջիկների սրտից էր մզել։

DESDEMONA.
Իրա՞ւ ես ասում։

OTHELLO.
Իրաւ, ուրեմն տես, որ լաւ պահես։

DESDEMONA.
Երանի երբեք տեսած չլինէի։

OTHELLO.
Հը՞, ինչո՞ւ, ի՞նչ կայ։

DESDEMONA.
Ինչո՞ւ ես սարսած եւ վռազ խօսում։

OTHELLO.
Կորե՞լ է, ասա, ձեռքիցդ ընկե՞լ է։

DESDEMONA.
Աստուա՜ծ փրկի մեզ։

OTHELLO.
Հը՞, ի՞նչ ես ասում։

DESDEMONA.
Ոչինչ, չի կորել, բայց դիցուք կորչէ՞ր։

OTHELLO.
Ինչպէ՞ս։

DESDEMONA.
Ասում եմ, չի կորել։

OTHELLO.
Գնա՛ բեր, տեսնեմ։

DESDEMONA.
Կարող եմ բերել, հիմա չեմ ուզում։ Այդ էլ մի խաղ է՝ միջնորդութիւնս մերժելու համար։ Խնդրում եմ՝ թոյլ տուր, որ Կասսիոն ետ գայ։

OTHELLO.
Թաշկինակը բեր. սիրտս վատ բան է նախագուշակում։

DESDEMONA.
Լաւ, լաւ։ Նրա պէս ընդունակ մի մարդ երբեք չես գտնի։

OTHELLO.
Թաշկինակը՛։

DESDEMONA.
Կասսիոյից խօսիր, աղաչում եմ քեզ։

OTHELLO.
Թաշկինակը՛։

DESDEMONA.
Մի մարդ, որ իր բախտն ամէն ժամանակ Քո պաշտպանութեան վրայ է հիմնել, Որ վտանգներիդ ընկերն է եղել...

OTHELLO.
Թաշկինակը՛։

DESDEMONA.
Ճիշտ, վատ ես անում։

OTHELLO.
Կորի՛ր։

[Exits.]

EMILIA.
Սա՞ չէ նախանձոտ։

DESDEMONA.
Երբեք այսպէս բան դեռ չէի տեսել։ Հաստատ, հրաշք կայ թաշկինակի մէջ։ Սաստիկ դժբախտ եմ, որ

կորցրել եմ։

EMILIA.
ՄԷկ-երկու տարում անկարելի Է մարդկանց ճանաչել. Նրանք բոլորն Էլ ստամոքսներ են, իսկ մենք՝ կերակուր։ Քանի քաղցած են, մեզ լաւ ուտում են, Եւ երբ որ կուշտ են, մեզ ետ են փսխում։

[Iago and Cassio enter.]

IAGO.
Ուրիշ ճար չկայ. տիկինն Է կարող։ Եւ տես, բախտ ունես, գնա, աղաչիր։

DESDEMONA.
Ինչպէ՞ս ես, Կասսիո. ի՞նչ նոր բան ունես։

CASSIO.
Հին աղաչանքս Է, տիկին։ Խնդրում եմ, Որ ձեր ազդեցիկ միջնորդութիւնով կեանք տաք ինձ նորից, Որ կրկին շահեմ այն մարդու սէրը, Որին իմ սրտի բոլոր զօրութեամբ մեծարել եմ միշտ։ Էլ չեմ սպասի։ Եթէ մեղքս այնքան մահացու մեղք Է, Որ ո՛չ իմ անցեալ ծառայութիւնը, ո՛չ ներկայ վիշտս, Ո՛չ Էլ ապագայ անձնուիրութեան մտադրութիւնս Չեն կարող այլեւս ետ գնել կրկին նրա շնորհը, Այդ իմանալն Էլ շահ Է ինձ համար, Որով իմ բախտին համակերպուելով՝ ա՛յլ ճամփայ բռնեմ։ Եւ շնորհ մուրամ իմ ճակատագրից։

DESDEMONA.
Աւա՛ղ, սիրելի՛, սիրելի՛ Կասսիո, Ջատագովութիւնս անդաշն Է դարձել։ Իմ ամուսինը ամուսինս չէ. Եթէ դէմքով Էլ նա այնպէս փոխուէր, ինչպէս բնոյթով, Նրան տեսնելիս չէի ճանաչի։ Երնեկ թէ ինձ Էլ ամէն սուրբ ոգի այնպէս թեւարկէր, Ինչպէս քեզ համար ես բոլոր ուժով բարեխօսեցի Եւ թիրախ դարձայ նրա բարկութեան իմ խիզախ խօսքով, Մի քիչ համբերիր։ Ինչ որ կարող եմ, կ'անեմ քեզ համար Եւ շատ աւելի, քան ինքս ինձ համար կը յանդգնէի։ Թող դա քեզ բաւէ։

IAGO.
Տէ՞րս բարկանայ։

EMILIA.
Հիմա դուրս գնաց եւ, անտարակոյս, խիստ վրդովուած Էր։

IAGO.
Կարելի՞ բան Է, որ նա բարկանայ։ Ինքս տեսել եմ, Երբ թնդանօթը օդն Էր թռցնում նրա շարքերը, Եւ դեւի նման կարծես թէ նրա հէնց գրկի միջից Ցրուեց սեփական նրա եղբօրը, եւ նա՞ բարկանայ։ Պէտք Է, ուրեմն, մի մեծ բան լինի։ Գնամ նրա մօտ, Թէ բարկացած, Է, ուրեմն բան կայ։

DESDEMONA.
Գնա, խնդրում եմ։

[Iago exits.]

DESDEMONA [cont.]
Պէտք է պետական մի մեծ գործ լինի, Կամ Վենետիկում սարքուած մի դաւ, Այստեղ՝ Կիպրոսում, երեւան գալով՝ Նրա ջինջ միտքը պղտորած լինի։ Եւ միշտ այսպիսի պարագաներում Մարդիկ սովոր են մաղձերը թափել փոքրերի գլխին, Թէեւ մեծերը լինեն մեղաւոր։ Միշտ էլ այդպէս է. բաւ է, որ մի քիչ մեր մատը ցաւի, Եւ մեր միւս առողջ անդամներին էլ ցաւ կը հաղորդի։ Չէ՛, թող գիտենանք, մարդիկ Աստուած չեն, Ոչ էլ նրանցից այնպիսի յարգանք եւ սէր սպասենք, Որպէս վայել է հարս ու փեսային։ Պախարակիր ինձ, Էմիլիա, որ ես՝ վատ դատախազս, Հոգուս մէջ նրան անսիրութեան մէջ զրպարտում էի, Այնինչ տեսնում եմ, որ ես վկային կաշառել էի Եւ իզուր էի նրան մեղադրում։

EMILIA.
Տայ աստուած, որ լոկ պետական գործեր, ինչպէս կարծում էք, Լինեն պատճառը, ոչ թէ մի կարծիք, նախանձի մի խուլք Ձե՛զ վերաբերեալ։

DESDEMONA.
Աւա՜ղ, ես երբեք առիթ չեմ տուել։

EMILIA.
Բայց խանդոտներին այդպիսի խօսքով չէք հանդարտեցնի։ Պատճառից չէ, որ խանդոտ են դառնում, Հապա խանդոտ են, քանզի խանդոտ են։ Մի հրէշ է դա՝ ինքնին յղացուած, իրենից ծնուած։

DESDEMONA.
Աստուած հեռացնի այդպիսի հրէշին ամուսնուս հոգուց։

EMILIA.
Ամէն, տիկինս։

DESDEMONA.
Գնամ նրա մօտ։ Կասսիո, դու այստեղ մի քիչ զբօսնիր, Եթէ ես նրան տրամադիր տեսնեմ, Նորից քո գործը մէջտեղ կը բերեմ Եւ վերջին ճիգս գործի կը դնեմ, որ յաջողեցնեմ։

CASSIO.
Շատ շնորհապարտ եմ ձեր ազնուութեան։

[As Desdemona and Emilia exit Bianca enters.]

BIANCA.
Բարեւ քեզ, բարեւ, սիրելի Կասսիո։

CASSIO.
Գործդ ի՞նչ է այստեղ։ Ինչպէ՞ս ես, հոգիս, իմ սիրուն Բիանքա. Ճիշտը, անուշիկ, քեզ էի գալիս։

BIANCA.
Ես էլ գնում էի քո բնակարանը։ Այս ի՞նչ է, Կասսիո, մի՛ շաբաթ չգալ, եօ՛թն օր ու գիշեր։ Ութը քսան ժամ եւ ութն էլ վրան. Եւ սիրականից հեռու ժամերը Ութը քսան անգամ դանդաղ են, քան թէ ժամացոյցի վրայ։ Տաղտկալի՛ հաշիւ։

CASSIO.
Ներիր ինձ, Բիանքա. Բոլոր ժամանակ կապարէ հոգսեր ճնշել են հոգիս։ Բայց հիմա այնքան շարունակ կը գամ, որ տեղը լցնեմ։

[Gives her Desdemona's handkerchief.]

BIANCA.
Որտեղի՞ց էր այս, Կասսիո։ Անպատճառ մի յիշատակ է, Որ ստացել ես մի նոր սիրուհուց. Ահա զգալի բացակայութեանդ պատճառն եմ զգում։ Բանն այստե՞ղ հասաւ։ Լաւ, լաւ։

CASSIO.
Թող, ա՛յ կին։ Նետիր այդ յիմար ենթադրութիւններդ այն դեւի գլխին, Որ այդ բաները փչել է խելքիդ։ Նախանձո՞ւմ ես այժմ, թէ մի սիրուհի նուիրել է ինձ, մի յիշատա՞կ է։ Ո՛չ, հաւատա ինձ, սիրելի Բիանքա։

BIANCA.
Հապա ո՞ւմն է սա։

CASSIO.
Չգիտեմ, հոգիս։ Սենեակումս գտայ։ Սրա բանուածքը ինձ դուր է գալիս. Նախքան ետ ուզեն, եւ հաստատ գիտեմ, որ կը գան, կ'ուզեն, Շատ կը ցանկանայի օրինակել տամ։ Առ, օրինակիր, Իսկ այժմ հեռացիր։

BIANCA.
Հեռանա՞մ, ինչո՞ւ։

CASSIO.
Զօրապետին եմ սպասում այստեղ։ Ինձ համար լաւ չէ, եւ չեմ կամենում, Որ նա ինձ այստեղ կնոջ հետ տեսնի։

BIANCA.
Ինչո՞ւ, խնդրում եմ։

CASSIO.
Ո՛չ այն պատճառով, որ չեմ սիրում քեզ։

BIANCA.
Բայց ինձ չես սիրում։ Խնդրեմ, մի քիչ տեղ ընկերացիր ինձ։ Ասա, այս գիշեր, շո՞ւտ կը գաս ինձ մօտ։

CASSIO.
Քի՛չ տեղ եմ կարող քեզ ընկերանալ. Պէտք է հէնց այստեղ նրան սպասեմ, բայց շուտով կը գամ։

BIANCA.
Շատ լաւ, ի՜նչ անեմ, պէտք է յարմարուեմ հանգամանքներին։

[Both exit.]

][][

ACT IV. SCENE I.
Cyprus. Before the Castle. Othello and Iago enter.

IAGO.
Այդպէ՞ս էք կարծում։

OTHELLO.
Կարծո՞ւմ, Եագո։

IAGO.
Ի՜նչ, գաղտնի համբո՞յր։

OTHELLO.
Արգելուա՛ծ համբոյր։

IAGO.

Կամ մերկ, անկողնում, իր սիրածի հետ Մէկ ժամ կամ աւել առանց վատ մտքի՛։

OTHELLO.
Մերկ, անկողնի մէջ, առանց վատ մտքի՞։ Նշանակում է սատանին խաբել։ Նրանք, որ մաքուր ուզում են մնալ, բայց այդ էլ անել, Սատանան նրանց առաքինութիւնն ուզում է փորձել, Նրանք՝ երկնքին։

IAGO.
Թէ ոչինչ չանեն, ներելի մեղք է. Բայց երբ կնոջս մի թաշկինակ տամ...

OTHELLO.
Յետո՞յ։

IAGO.
Յետոյ այն, տէր իմ, որ դա նրանն է. Ուրեմն իր ինչքը նա կարող է տալ ու՛մ որ կամենայ։

OTHELLO.
Ի՞նչ խօսք, իր պատուի պաշտպանն էլ ինքն է. Կարո՞ղ է միթէ ուրիշ մարդու տալ։

IAGO.
Պատիւ ասածը անտեսանելի մի էութիւն է. Շատ մարդիկ ունեն եւ, սակայն, չունեն։ Բայց թաշկինակը...

OTHELLO.
Երկինքն է վկայ, երանի թէ ես մոռացած լինէի։ Դու ասում էիր - օ՛հ, դա ճախրում է իմ մտքի վրայ, Ինչպէս ագռաւը մի վարակուած տան կտուրի վրայ՝ Իբրեւ բօթաբեր ամէնքի համար,- Դու ասում էիր, որ թաշկինակս նրա ձեռքի՞ն էր։

IAGO.
Այո՛, յետոյ ի՞նչ։

OTHELLO.
Դա շատ վատ բան է։

IAGO.
Իսկ ի՞նչ կ'անէիք, Եթէ ասէի, թէ ձեր կնոջ հետ տեսել եմ նրան, Կամ թէ ասում էր... քանի որ այնպէս սրիկաներ կան, Որոնք հէնց իրենց հետապնդումով Կամ մի սիրուհու ինքնակամ տենչով, Կանանց խաբելուց կամ թէ գոհացում բաշխելուց յետոյ Անկարելի է, որ չպարծենան։

OTHELLO.
Մի բա՞ն է պատմել։

IAGO.
Այո՛, պատմել է, բայց վստահ եղէք, Ինչ որ ասել է, կ՚երդուի, որ սուտ է։

OTHELLO.
Եւ ի՞նչ է ասել։

IAGO.
Թէ նա… չգիտեմ… ինչեր է արել։

OTHELLO.
Ի՞նչ, ի՞նչ։

IAGO.
Պառկել է։

OTHELLO.
Նրա՞ հետ։

IAGO.
Հետը կամ վրան, ինչպէս որ ուզէք։

OTHELLO.
Հետը՛ կամ վրան… հետը՞ պառկել, գարշելի՛ բան է։ Թաշկինակը… թող խոստովանի… թաշկինակը… թող խոստովանի եւ ապա կախուի։ Նախ կախուի, յետոյ խոստովանի։ Դողցոց եմ բռնել։ Բնութիւնն իմ մէջ այս մռայլ կրքոտութեանը չէր հասնի, եթէ մի ներքին ձայն չխօսէր։ Բառերը չեն, որ ինձ այսպէս ցնցում են։ Վա՛խկ, քիթ, ականջ, շրթունք … կարելի՞ բան է։ Խոստովանութիւ՞ն։ թաշկինա՞կ … օ՛հ, չա՛ր սատանայ։

[Falls into a trance.]

IAGO.
Ներգործիր, դե՛ղս։ Այսպէս են բռնում դիւրախաբներին։ Եւ շատ պատուական եւ մաքուր կանայք հէնց այս ձեւով է, Որ թէեւ անմեղ՝ խայտառակւում են։ Հէ՛յ, էհէ՛յ, տէ՛ր իմ, էհէ՛յ, ասում եմ, Օթելլո՛, տէ՛ր իմ …

[Cassio enters.]

IAGO [cont.]
Հը՞, ի՞նչ կայ, Կասսիո։

CASSIO.
Ի՞նչ է պատահել։

IAGO.
Տէրս ընկել է լուսնոտութեան մէջ, Երկրորդ անգամն է, իսկ առաջինը երէկ պատահեց։

CASSIO.
Քունքերը շփիր։

IAGO.
Ո՛չ, դա լաւ բան չէ։ Պէտք է տագնապը հանդարտ անց կենայ. Թէ ոչ բերանը կը փրփրոտի, եւ հետզհետէ Կ'ընկնի վայրենի կատաղութեան մէջ։ Տես, շարժւում է։ Գնա մի րոպէ եւ հեռու կեցիր։ Այժմ ուշքի կը գայ։ Երբ նա դուրս գնայ, Մի մեծ բանի վրայ կը խօսեմ քեզ հետ։

[Cassio exits.]

IAGO [cont.]
Ինչպէ՞ս էք, տէր իմ, չլինի՞ գլխից վիրաւորուել էք։

OTHELLO.
Հա՛, ծաղրո՛ւմ ես ինձ։

IAGO.
Ե՞ս ձեզ ծաղրեմ. ո՛չ, երկինքը վկայ։ Ձեր անբախտութեան տղամարդու պէս պէտք է դիմանաք։

OTHELLO.
Կոտոշով մարդը հրէշ է, գազան է։

IAGO.
Եթէ այդպէս է, մեծ քաղաքներում գազաններ շատ կան եւ շատ կիրթ հրէշներ։

OTHELLO.
Եւ խոստովանե՞ց։

IAGO.
Իմ բարի տէրս, տղամարդ եղէք։ Իմացէք, ամէն մօրուք ունեցող, որ լծի տակ է, Պէտք է ձեր կողքին իր

լուծը քաշի։ Միլիոն մարդիկ կան այսօր կենդանի, Որ ամէն գիշեր պառկում են իրենց պիղծ անկողնի մէջ, Եւ երդում կ'անեն, որ դա իրենց է միայն սեփական։ Դեռ ձեր վիճակը նրանցից լաւ է։ Օ՜, դժոխային՜ չարախնդութիւն, Օ՜, չար սատանի գերագո՜յն հեգնանք, Մի պոռնիկ զգուել անհոգ անկողնում Եւ առաքինի համարել նրան։ Ո՜չ, թող գիտենամ եւ գիտենալով իմ ի՜նչ լինելը՝ Կ'իմանամ, թէ նա ի՜նչ պէտք է լինի։

OTHELLO.
Խելօք մարդ ես դու, տարակոյս չկայ։

IAGO.
Դուք հեռու գնացէք մի քանի րոպէ Եւ համբերութեամբ բաւականացէք ականջ դնելով, Երբ որ քիչ առաջ դուք այստեղ վշտից ընկճուել էիք,- Եւ ձեզ պէս մարդուն այդպիսի կիրքը անվայել բան է,- Կասսիոն ներս եկաւ։ Ես նրան հեռացրի Եւ ձեր ուշաթափ լինելու մասին մի բան հնարեցի, Յետոյ խնդրեցի, որ շուտով ետ գայ ինձ հետ խօսելու։ Նա էլ խոստացաւ։ Դուք մի տեղ մտէք եւ մտիկ տուէք. Ի՜նչ ծաղր, ի՜նչ ծանակ եւ ի՜նչ ակնյայտ արհամարհանք կայ Նրա երեսի ամէն գծի վրայ։ Ես այնպէս կ'անեմ, որ նորից ամբողջ պատմութիւնն ասի։ Թէ ո՜ւր եւ ինչպէ՜ս, քանի՜ օր առաջ եւ քանի՜ անգամ Նա ձեր կնոջ հետ պառկել է արդէն եւ պառկելու է։ Տեսէք, ասում եմ, նրա ձեւերը։ Բա՜հ, համբերութի՜ւն. Եթէ ոչ, կ'ասեմ՝ դուք գլխով-ոտքով մաղձ, էք, ոչ թէ մարդ։

OTHELLO.
Լսիր ինձ, Եագո, համբերութեան մէջ խորամանկ կը լինեմ, Բայց հասկանո՞ւմ ես, սաստիկ արիւնռուշտ։

IAGO.
Լաւ, վնաս չունի, Բայց, ամէն մի բան՝ իր ժամանակին։ Քաշուեցէք մէկդի։

[Othello withdraws.]

IAGO [cont.]
Հիմա Կասսիոյին Բիանքայի մասին հարցումներ կ'անեմ. Անառակ մի կին, որ հաց ու հագուստ ճարելու համար Տարփանք է ծախում, մի խեղճ արարած, Որ խենթանում է Կասսիոյի վրայ։ Այդ կանանց բախտն է՝ շատերին խաբել եւ մէկից խաբուել, Կասսիոն, երբ նրա անունն են տալիս, Ուշքից գնում է։ Ահա գալիս է։

[Cassio enters.]

IAGO [cont.]
Բաւ է սա ժպտա, մաւրը կը գժուի, Եւ նրա յիմար խանդոտութիւնը Պէտք է Կասսիոյի քմծիծաղներին, թեթեւ ձեւերին Թիւր մեկնութիւն տայ։- Հիմա ինչպէ՞ս էք, տեղակալ։

CASSIO.
Է՛լ աւելի վատ, երբ ինձ կանչում ես հէնց ա՛յն տիտղոսով, Որից զրկուելը մահ է ինձ համար։

IAGO.
Հոգ չէ, խնդրեցէք Դէզդեմոնային, եւ նա կը շտկի։ Ցածր ձայնով։ Եթէ Բիանքայից կախուած լինէր դա, Ինչ՛ շուտ ձեր գործը կարգի կը դրուէր։

CASSIO.
(Ծիծաղելով։) Խե՛ղճ ողորմելի։

OTHELLO.
Հա՛, ինչպէս արդէն քահ-քահ է անում։

IAGO.
Մի կին չեմ տեսել, որ մարդու վրայ այսքան խենթանայ։

CASSIO.
Խեղճի՛կ, կարծես թէ սիրում է նա ինձ։

OTHELLO.
Հազիւ է հերքում եւ ծիծաղում է։

IAGO.
Լսեցէք, Կասսիո։

OTHELLO.
Հիմա ստիպում է, որ նորից պատմի։ Այդպէս, լաւ, շատ լաւ։

IAGO.
Լուր են տարածում, որպէս թէ նրան առնել էք ուզում։ Իրաւ՞ միտք ունէք։

CASSIO.
Հա՛, հա՛, հա՛։

OTHELLO.
Յաղթանակո՞ւմ ես, հռովմայեցի, յաղթանակո՞ւմ ես։

CASSIO.
Ե՞ս նրան առնեմ, ի՞նչ, մի հասարակաց կնոջ հետ ամուսնանա՞մ։ Ի սէր Աստծոյ, գթա իմ խելքին, այնքան էլ ցնդած մի կարծիր ինձ։ Հա՜, հա՜, հա՜։

OTHELLO.
Այո՛, այո՛, այո՛. շահողը միշտ կը ծիծաղի։

IAGO.
Ազնի՛ւ խօսք, լուր է տարածուած, թէ դուք նրա հետ ամուսնանում էք։

CASSIO.
Ճիշտն ասա, խնդրեմ։

IAGO.
Անազնիւ մարդ եմ, եթէ սուտ ասեմ։

OTHELLO.
Ուրեմն ինձ խարանե՞լ էք։ Լաւ՛։

CASSIO.
Այդ կապիկն ինքը տարածած կը լինի, համոզուած է, որ նրա հետ ամուսնանալու եմ։ Իր ինքնասիրութիւնից եւ ինքնահաւանութիւնիցն է այդպէս կարծել, ոչ թէ ե՛ս եմ մի բան խոստացել։

OTHELLO.
Եագոն ինձ նշան է անում, հիմա կը սկսի պատմել։

CASSIO.
Հէնց հիմա այստեղ էր. ամէն տեղ վազ է տալիս ետեւիցս։Անցեալ օրը ծովեզերքում մի քանի վենետիկցիների հետ խօսում էի, մէկ էլ տեսնեմ՝ տիկնիկը եկաւ եւ, ձեռքս վկա՛յ, փաթաթուեց վզիս, այսպէս...

OTHELLO.
Ճչալով. «Օ՛, իմ սիրելի Կասսիօ»։ Շարժումն այդ է նշանակում։

CASSIO.
Այսպէս կախ ընկաւ վզիցս, թեք ընկաւ վրաս եւ սկսեց լաց լինել, ինձ քարշ տալ, հրել։ Հա՛, հա՛, հա՛, հա՛։

OTHELLO.
Հիմա պատմում է, թէ ինչպէ՛ս նրան քարշ տուեց, տարաւ իմ սենեակը։ Օ՛, այդ քիթդ տեսնում եմ, բայց

դեռ չգիտեմ, թէ որ շան առաջն եմ նետելու։

CASSIO.
Այո՛, պէտք է հեռանամ այդ կնոջից։

IAGO.
Ահա, գալիս է։

CASSIO.
Իսկ որ ժանտակուզ, միայն անուշահոտը։

[Bianca enters.]

CASSIO [cont.]
Ի՞նչ ես ուզում՝ այսպէս ետեւիցս ընկնելով։

BIANCA.
Սատանան եւ իր մայրն ընկնե՛ն քո ետեւից։ Ի՞նչ էիր ուզում ասել՝ այս թաշկինակն ինձ տալով։ Ես ի՛նչ յիմարն էի, որ ընդունեցի։ Ի՞նչ է, նստեմ բանուածքը քեզ համար օրինակե՞մ։ Ինչ լաւ էլ հնարել ես, որպէս թէ սենեակումդ ես գտել եւ չգիտես, թէ ո՛վ է այնտեղ թողել։ Անպատճառ մի շան աղջիկ քեզ նուիրած կը լինի, եւ ես բանուածքն օրինակե՞մ։ Վեր առ, տար տուր աչքիդ լոյսին։ Որտեղից էլ ձեռք բերած լինես, ես օրինակողը չեմ։

CASSIO.
Ի՞նչ խօսք, անուշիկ Բիանքա, ի՞նչ խօսք է։

OTHELLO.
Երկինքը վկա՛յ, հէնց իմ թաշկինակը պէտք է լինի։

BIANCA.
Եթէ այս գիշեր կը գաս ընթրիքի, եթէ չես ուզում գալ, եկ, երբ որ կ'ուզես։

[Exits.]

IAGO.
Վազէք ետեւիցը, վազէք։

CASSIO.
Այո՛, պէտք է ետեւից գնամ, թէ ոչ՝ փողոցում կը խայտառակի ինձ։

IAGO.
Ընթրիքին նրա մօտ կը լինէ՞ք։

CASSIO.
Այո՛, այդպէս է միտքս։

IAGO.
Լաւ, կարելի է՝ կը հանդիպեմ ձեզ. բան ունեմ ասելու։

CASSIO.
Եկ խնդրեմ։ Կը գա՞ս։

IAGO.
Այո՛, գնացէք, մի՛ խօսէք։

[Cassio exits.]

OTHELLO.
[Stepping forward.] Ինչպէ՞ս սպանեմ նրան, Եագո։

IAGO.
Տեսա՞ք, ինչպէս էր ծիծաղում իր լրբութեան վրայ։

OTHELLO.
Օ՛, Եագո՛։

IAGO.
Թաշկինակն էլ տեսա՞ք։

OTHELLO.
Իմ՞ս էր։

IAGO.
Ձերն էր, այս ձեռքս վկայ։ Եւ տեսնե՛լ, թէ ինչպէս է գնահատում ձեր այն յիմար կնոջը։ Նա տուել է Կասսիոյին, իսկ Կասսիոն՝ իր պոռնիկին։

OTHELLO.
Ա՛խ, ինը տարի շարունակ խողխողէի՛ այդ թշուառականին։ Ի՛նչ հրաշալի կին, ի՜նչ գեղեցիկ կին, ի՜նչ

անուշիկ կին։

IAGO.
Դէ լաւ՛, այդ բոլորը պէտք է մոռանաք։

OTHELLO.
Այո, թող փտի ու փչանայ, պէտք է ա՛յս գիշեր սատանայի բաժին դառնայ, չպէտք է ապրի, չէ՛։ Սիրտս քար է կտրել, երբ ձեռքով զարկում եմ, ձեռքս ցաւում է։ Օ՛, ամբողջ աշխարհը նրա նման անուշիկ էակ չունի, նա արժանի էր մի կայսեր կողքին թիկն տալու եւ նրան հրամայելու։

IAGO.
Բայց ուրիշ կողմ էք գնում։

OTHELLO.
Գետինը մտնի՛։ Ասում եմ, թէ նա ի՛նչ բան է. ի՛նչ նուրբ ձեռք ասեղնագործութեան մէջ, ի՛նչ զմայլելի նուագող։ Օ՛, նա իր երգով արջին էլ կարող է մեղմացնել։ Ի՛նչ բարձր ու հարուստ իմացականութիւն, ի՛նչ երեւակայութիւն։

IAGO.
Է՛լ աւելի վատ։

OTHELLO.
Այո՛, հազար, հազար անգամ։ Եւ յետոյ՝ այնպէ՛ս հեզահամբոյր բնաւորութիւն։

IAGO.
Այո՛, շա՛տ հեզահամբոյր։

OTHELLO.
Իսկապէ՛ս, բայց եւ այնպէս՝ ափսո՛ս, Եագո, ափսո՛ս։ Օ՛, Եագո, ափսո՛ս։

IAGO.
Հիմա, որ այդքան սքանչացած էք նրա նենգութեան վրայ, լաւ՛, լիազօրութիւն տուէք նրան, որ իր ուզածն անի։ Եթէ դա ձեզ վնաս չի տալիս, ոչ ոքի վնաս չի տալիս։

OTHELLO.
Կը բրդե՛մ նրան։ Ինձ՞ խայտառակել։

IAGO.
Գարշելի բան է։

OTHELLO.
Այն Էլ՝ իմ սպայի՞ հետ։

IAGO.
Աւելի գարշելի։

OTHELLO.
Մի քիչ թոյն գտիր ինձ համար, Եագո, ա՛յս գիշեր։ Չեմ ուզում հետը խօսքի բռնուել, միգուցէ նրա մարմինը եւ գեղեցկութիւնը միտքս խախտեն։ Հէնց ա՛յս գիշեր, Եագո։

IAGO.
Թոյնով մի՛ արէք, անկողնում խեղդեցէք, հէնց այն անկողնում, որ նա պղծել է։

OTHELLO.
Լաւ, լաւ ասացիր, դրա արդարութիւնը ինձ դուր է գալիս, շատ լաւ։

IAGO.
Իսկ ինչ Կասսիոյին է վերաբերում, նրա գործը ինձ թողէք, կէսգիշերին լուրը կը լսէք։

OTHELLO.
Շատ լաւ։

[Distant trumpets.]

OTHELLO [cont.]
Այս ի՞նչ փողահարութիւն է։

IAGO.
Պէտք է Վենետիկից եկող լինի, անշո՛ւշտ։ Լոդովիկոն է՝ դուքսի կողմից եկած։ Նայեցէք, ձեր կինն էլ հետն է։

[Lodovico, Desdemona and Servants enter.]

LODOVICO.
Աստուած պահի ձե՛զ, արգոյ զօրապետ։

OTHELLO.
Ողջոյն ձեզ, տէր իմ։

LODOVICO.
Դուքսը եւ բոլոր սենատորները ողջունում են ձեզ։

[Gives him a packet.]

OTHELLO.
Ես համբուրում եմ նրանց շնորհի այս հաղորդիչը։

[Opens the packet and reads.]

DESDEMONA.
Ի՞նչ նոր լուր ունէք, սիրելի Լոդովիկո։

IAGO.
Սինեօր, ուրախ եմ ձեզ հանդիպելուս, ձեզ գալուստ բարի։

LODOVICO.
Շնորհակալ եմ. ինչպէ՞ս է արդեօք տեղակալ Կասսիոն։

IAGO.
Ապրում է, տէր իմ։

DESDEMONA.
Ա՛հ, սինեօր, նրա եւ ամուսնուս մէջ մի գժտութիւն կայ, Բայց դուք բոլորը կարգի կը դնէք։

OTHELLO.
Այդքան վստա՞հ ես։

DESDEMONA.
Տէ՛ր իմ։

OTHELLO.
[Reads.] «Անպատճառ արէք այս բանը, եթէ...»

LODOVICO.
Ձեզ հետ չէր, տիկին, նամակն էր կարդում։ Ի՞նչ, զօրապետի եւ Կասսիոյի մէջ բա՞ն է պատահել։

DESDEMONA.
Շատ ցաւալի բան։ Շատ բան կը տայի, որ հաշտեցնէի, Այնքան որ Կասսիոն սիրելի է ինձ։

OTHELLO.
Կրա՛կ ու ծծո՛ւմբ։

DESDEMONA.
Տէ՛ր իմ։

OTHELLO.
Գժուե՞լ ես։

DESDEMONA.
Բարկացա՞ւ,ի՞նչ է։

LODOVICO.
Գուցէ նամակը նրան վրդովեց. Կարծեմ թէ նրան հրահանգ է տրուած Վենետիկ դառնալ՝ Կասսիոյին իր տեղ նշանակելով իբրեւ կուսակալ։

DESDEMONA.
Ճի՞շտ, շատ ուրախ եմ։

OTHELLO.
Իրա՞ւ։

DESDEMONA.
Ի՞նչ, տէ՛ր իմ։

OTHELLO.
Ուրախ եմ, որ քեզ գժուած եմ տեսնում։

DESDEMONA.
Ինչո՞ւ, սիրելիս։

OTHELLO.
Դեւ՛։

[Punches Desdemona.]

DESDEMONA.
Այսպիսի բանի արժանի չէի։

LODOVICO.
Տէր իմ, Վենետիկում ոչ ոք չպիտի հաւատար սրան, Թէկուզ երդուէի, որ ինքս եմ տեսել։ Դա չափից անց է։ Ներում խնդրեցէք. նա լաց է լինում։

OTHELLO.
Դեւ՛, դեւ՛, դեւ՛։ Երկրի արգանդը եթէ յղանար կնոջ արցունքից, Ամէն կաթիլից մի կոկորդիլոս կը ծնուէր։ Կորի՛ր։ Կորի՛ր իմ աչքից։

DESDEMONA.
Չեմ կենայ, երբ դա անախորժ է ձեզ։

[Starts to exit.]

LODOVICO.
Ի՛նչ հնազանդ կին է։ Աղաչում եմ ես ձերդ յարգութեան, Ետ կանչէք նրան։

OTHELLO.
Տիկին։

DESDEMONA.
Տէ՛ր իմ։

OTHELLO.
Ի՞նչ էք կամենում նրանից, տէր իմ։

LODOVICO.
Ո՞վ, ե՞ս, զօրապետ։

OTHELLO.
Այո՛, ուզեցիք՝ նրան ետ կանչեմ։ Նա լաւ կարող է դառնալ, ետ դառնալ եւ նորից գնալ, Եւ նորից դառնալ, եւ կարող է լալ, տէր իմ, այո՛, լալ։ Եւ շատ հնազանդ է, ինչպէս ասացիք, հնազանդ, շա՛տ հնազանդ։ Շարունակիր լալ։ Գալով այս խնդրին, սիրելի տէր իմ, Ի՛նչ լաւ նկարուած վշտահարութիւն, Ինձ ետ են կանչել։ Գնա, քիչ յետոյ քեզ կանչել կը տամ։ Տէր իմ, հնազանդ եմ այս հրամանագրին Եւ շուտ Վենետիկ կը վերադառնամ։ Հայդէ՛, դո՛ւրս կորիր։

[Desdemona exits.]

OTHELLO [cont.]
Կասսիոն կը մնայ իր պաշտօնի մէջ։ Եւ շնորհ արէք, տէր իմ, այս գիշեր ինձ հետ ընթրելու։ Բարով էք եկել Կիպրոս, ազնիւ տէր։ Այծե՛ր, կապիկնե՛ր։

[Exits.]

LODOVICO.
Սա՞ է, ուրեմն, այն ազնիւ մաւրը, Որին ողջ սենատն ամենակարող մարդ է անուանում։ Սա՞ է այն հոգին, որին ոչ մի կիրք չի կարող ցնցել, Որի ամրակուռ առաքինութիւնը Դիպուածի նետից կամ բախտի սլաքից Ո՛չ խազխզուել է եւ ո՛չ թափանցուել։

IAGO.
Սաստիկ փոխուել է։

LODOVICO.
Խելքը գլխի՞ն է։ Չի՞ ցնդել արդեօք։

IAGO.
Այն է, ինչ որ կայ։ Չպէտք է յայտնեմ իմ գաղափարը։ Ինչ պէտք է լինէր, եթէ նա այն չէ, որ պէտք է լինէր,- Տայ՜ Աստուած՝ լինէր։

LODOVICO.
Իր կնոջը՞ զարկել։

IAGO.
Ճիշտ է, լաւ բան չէր։ Բայց երանի թէ հաստատ լինէի, Որ այդ զարկելը ամէնից վատն էր։

LODOVICO.
Սովորութիւ՞նն է. Թէ՞ այս նամակը այսպէս բորբոքեց նրա արիւնը Եւ նոր ստեղծեց այս թերութիւնը։

IAGO.
Աւա՜ղ, ի՞նչ ասեմ։ Պարկեշտութիւն չէ իմ կողմից՝ յայտնել, թէ ինչե՛ր գիտեմ, Ինչե՛ր եմ տեսել։ Ինքներդ նրան շուտով կը տեսնէք, Եւ նրա վարքը նրան այնպէս լաւ կը ներկայացնի, Որ իմ ասելուն կարիք չի մնայ։ Ետեւից գնացէք եւ տեսէք՝ ինչպէ՞ս կը շարունակի։

LODOVICO.
Շատ ցաւալի է, որ նրա մասին յուսախաբ եղայ։

[Both exit.]

]|[

## ACT IV. SCENE II.

Cyprus. A Room in the Castle. Othello and Emilia enter.

OTHELLO.
Ոչինչ չե՞ս տեսել, ուրեմն։

EMILIA.
Ոչինչ, եւ ոչ էլ լսել, ոչ էլ կասկածել։

OTHELLO.
Այո, տեսել ես նրան Կասսիոյի հետ։

EMILIA.
Բայց ես դրա մէջ վատ բան չեմ՝ տեսել։ Եւ ամէն մի վանկ, որ շունչը նրանց մէջ փոխանակել է, ես էլ լսել եմ։

OTHELLO.
Եւ երբեք նրանք չե՞ն փսփսացել։

EMILIA.
Երբե՛ք։

OTHELLO.
Եւ իրենց մօտից քեզ չե՞ն հեռացրել։

EMILIA.
Երբե՛ք։

OTHELLO.
Հովանոց, ձեռնոց, դիմակ կամ այլ բան բերելու համար։

EMILIA.
Երբե՛ք, տէր իմ։

OTHELLO.
Զարմանալի է։

EMILIA.
Պատրաստ եմ երդուել, տէր իմ, որ ձեր կինն առաքինի է. Հոգի՛ս գրաւ կը տամ։ Եթէ դուք ուրիշ գաղափար ունէք, Հեռացրէք ձեզնից, դա պատրում է ձեզ։ Եթէ մի սրիկայ այդպիսի կարծիք ձեր գլուխն է խոթել, Թող Աստուած նրան օձի անէծքով փոխարէնն անի, Եթէ նա պարկեշտ եւ՛ հաւատարիմ, եւ՛ մաքուր կին չէ։ Ուրեմն աշխարհում ոչ մի երջանիկ ամուսին չկայ, Եւ նրանց կանանց ամէնից սուրբը Աղտոտ է, ինչպէս զրպարտութիւնը։

OTHELLO.
Գնա, ասա՝ գայ։

[Emilia exits.]

OTHELLO [cont.]
Շատ թունդ է խօսում։ Բայց ո՞ր կաւատն է, որ այսպէս չասի։ Խորամանկ բոզ է։ Փակուած ու կողպած մի պահարան է գարշ գաղտնիքների։ Եւ այնուհանդերձ նա ծունկ կը չոքի եւ աղօթք կ'անի. Ինքս տեսել եմ։

[Desdemona and Emilia enter.]

DESDEMONA.
Ի՞նչ էք կամենում, տէր իմ։

OTHELLO.
Եկ այստեղ, ճուտիկ։

DESDEMONA.
Ի՞նչ էք ցանկանում։

OTHELLO.
Աչքերիդ տեսնեմ, նայիր երեսիս։

DESDEMONA.
Ի՞նչ սարսափելի մի քմայք է դա։

OTHELLO.
[To Emilia.] Պաշտօնի՛դ, տիկին։ Թող զուգուողները առանձին մնան, եւ դուռը փակիր։ Թէ մարդ գայ,

հազա կամ թէ հը՛մ արա։ Արհեստդ գործի դիր, արհեստդ, դե՛հ, շո՛ւտ։

[Emilia exits.]

DESDEMONA.
Ոտքերդ ընկնեմ, ասա՛, ի՞նչ է այդ խօսքերիդ միտքը։ Ես հասկանում եմ բառերիդ միջի կատաղութիւնը, Բայց ո՛չ բառերը։

OTHELLO.
Հա՛, հա՛, դու ի՞նչ ես։

DESDEMONA.
Քո կինը, տէր իմ, քո հաւատարիմ եւ անկեղծ կինը։

OTHELLO.
Հա՛, երդում արա եւ դժոխք գնա, Թէ ոչ՝ երկնքի բնակիչներին այնքան նման ես, Որ դեւերն էլ քեզ կը սոսկան բռնել։ Ուրեմն երկպատիկ մեղապարտ դարձիր՝ Երդուելով, թէ դու առաքինի ես։

DESDEMONA.
Աստուած լաւ գիտէ։

OTHELLO.
Աստուած լաւ գիտէ, որ այնպէս կեղծ ես, ինչպէս դժոխքը։

DESDEMONA.
Դէպի ո՞ւմ, տէր իմ, ո՞ւմ հետ, ինչպէ՞ս կեղծ։

OTHELLO.
Ա՛հ, Դէզդեմոնա, կորի՛ր, կորի՛ր, կորի՛ր։

DESDEMONA.
Վա՛յ իմ սեւ օրին, ինչո՞ւ ես լալիս. Ե՞ս եմ պատճառը այս արտասուքիդ, սիրելի՛ տէրս։ Եթէ պատահմամբ կասկածում ես դու, Թէ հօրս գործն է քո ետ կանչուելը, Ես ի՞նչ մեղք ունեմ։ Թէ հայրս քեզ հետ թշնամացել է, Նոյնպէս եւ ինձ հետ։

OTHELLO.
Եթէ երկինքը ուզէր փորձել ինձ պատուհասներով, Ամէն տեսակ ցաւ եւ անարդարութիւն տեղար մերկ գլխիս, Խորասուզէր ինձ մինչեւ շրթունքս աղքատութեան մէջ, Գերութեան տար ինձ եւ վերջին յոյսս պատրանք դարձնէր, Դարձեալ իմ հոգու մի խորշիկի մէջ Ես համբերութեան մի փոքրիկ կաթիլ գտած

կը լինէի։ Բայց վա՛յ, ինձ դարձնել մի անշարժ արձան, Որ անարգանքի ամբողջ աշխարհը Իր դանդաղաշարժ մատովը ցոյց տայ, Լաւ՛, ես դրան էլ կը հանդուրժէի. այդ էլ լաւ, շատ լաւ։ Բայց այնտեղ, ուր սիրտս աւանդ եմ դրել, Ուր պէտք է ապրեմ կամ բնաւ չապրեմ, Այն իսկ աղբիւրը, որից բխում է կեանքիս հոսանքը, Թէ ոչ, կը ցամքի, այնտեղի՞ց վանուել. Կամ թէ պահել այն որպէս ջրամբար զազիր գորտերի, Որ այնտեղ զուգուեն եւ սերունդ բերեն... Գունատուիր այստեղ, ո՛վ համբերութիւն, Ո՛վ դու վարդաշուրթ մատաղ քերովբէ, Եւ մռայլ դարձիր, ինչպէս դժոխքը։

DESDEMONA.
Յոյս ունեմ, որ ինձ իմ ազնիւ տէրը պարկեշտ է կարծում։

OTHELLO.
Հա՛, այո՛, ինչպէս ամառուայ ճանճերն սպանդանոցում, Որ ձուից չելած՝ զուգաւորուում են։ Ո՛վ դու վայրի խոտ, Որ այնպէս սիրուն եւ սիրասուն ես, Այնպէս քաղցրաբոյր, որ զգայարանքն արբեցնում ես, Երանի երբեք ծնուած չլինէիր։

DESDEMONA.
Աւա՛ղ, ի՞նչ անգէտ յանցանք եմ գործել։

OTHELLO.
Այս մաքուր թուղթը, այս շքեղ գիրքը Միթէ՞ շինուած էր, որ վրան «բոզ» գրեն։ Ինչ մեղք ես գործե՛լ, գործե՛լ։ Ա՜յ պոռնի՛կ, հասարակաց բո՛զ։ Թէ ասեմ միայն քո արածները, Ամէն մի այտս հնոց կը դառնայ Եւ մոխիր կ'անի համեստութիւնը։ Ինչ մեղք ես գործե՛լ։ Երկինքը հոտից իր քիթն է խցում, Լուսինն ամօթից իր աչքն է գոցում, Եւ լկտի քամին, որ հանդիպողին համբոյր է տալիս, Փախչում է երկրի քարայրների մէջ, որ չլսի այդ։ Ի՞նչ մեղք ես գործել, անամօ՛թ պոռնիկ։

DESDEMONA.
Երկինքը վկա՛յ, զրպարտում ես ինձ։

OTHELLO.
Դու բոզ չե՞ս։

DESDEMONA.
Երբե՛ք, թէ քրիստոնեայ եմ։ Եթէ այս անօթն ամէն ապօրէն եւ պիղծ հպումից Անարատ պահել իմ տիրոջ համար, Դա բոզ լինել չէ, ուրեմն բոզ չեմ։

OTHELLO.
Ի՞նչ, դու պոռնիկ չե՞ս։

DESDEMONA.
Ո՛չ, չփրկուե՛մ։

OTHELLO.
Կարելի՞ բան է։

DESDEMONA.
Փրկիր մեզ, երկի՜նք։

OTHELLO.
Ուրեմն քեզնից ներում եմ խնդրում, Ես քեզ դրել եմ այն վենետիկցի ճարպիկ բոզի տեղ, Որ պսակուել է Օթելլոյի հետ։ Ձախը բարձրացնելով։ Իսկ դու՛, ա՛յ կնիկ, դու սուրբ Պետրոսի ճիշտ հակառակը։

[Emilia enters.]

OTHELLO [cont.]
Դու՛ դու՛, վերջացրինք մեր անելիքը։ Առ փող քո քաշած նեղութեան համար։ Բանալին շուռ տուր եւ մեր գաղտնիքը լաւ ծածուկ պահիր։

[Exits.]

EMILIA.
Վա՛յ մեզ, այս մարդը ինչե՛ր է կարծում։ Ինչպէ՞ս էք, տիկին։ Աւա՛ղ, ինչպէ՞ս էք, իմ բարի տիկին։

DESDEMONA.
Կէս-քուն, կէս-արթուն։

EMILIA.
Սիրելի տիկին, ի՞նչ է պատահել տիրոջս։

DESDEMONA.
Ու՞մ։

EMILIA.
Տիրոջս, տիկին։

DESDEMONA.
Ո՞վ է քո տէրը։

EMILIA.
Նա, որ եւ ձերն է, անուշիկ տիկին։

DESDEMONA.
Ո՛չ, ես տէր չունեմ, մի խօսիր ինձ հետ, Էմիլիա։ Չեմ կարող գէթ լալ եւ, բացի լալուց, պատասխան չունեմ։ Խնդրեմ, Էմիլիա, որ հարսանիքիս իմ սաւանները Այս գիշեր քաշես անկողնիս վրայ։ Տես, չմոռանաս. Եւ գնա, կանչիր ամուսնուդ այստեղ։

EMILIA.
Ի՜նչ փոփոխութիւն։

[Exits.]

DESDEMONA.
Տեղն է, որ ինձ հետ այսպէս են վարւում, այո՛, շատ տեղն է, Ինչպէ՞ս եմ վարուել, որ ամուսինս կարողացել է Ամենաչնչին կասկածը գամել Ամենափոքրիկ իմ սխալանքին։

[Iago and Emilia enter.]

IAGO.
Ի՞նչ էք հրամայում, տիկին։ Ինչպէ՞ս էք։

DESDEMONA.
Աւա՜ղ, ի՞նչ ասեմ։ Նրանք, որ փոքրիկ երեխաներին ուզում են կրթել, Այդ բանն անում են մեղմ միջոցներով, դիւրին դասերով։ Թող նա էլ ինձ հետ այդ ձեւով վարուէր։ Եւ իրաւն ասած, երբ ինձ սաստում են, մանուկ եմ դառնում։

IAGO.
Ի՞նչ է պատահել, ազնիւ տիրուհի։

EMILIA.
Վա՜հ, Եագո, տէրս նրան բոզ կանչեց Եւ գլխին այնպէս ծանր անարգանք եւ լուտանք թափեց, Որ անմեղ սիրտը երբեք չի տանի։

DESDEMONA.
Ի՞նձ այդ անունը։

IAGO.
Ի՞նչ անուն, տիկին։

DESDEMONA.
Այն, որ կինդ ասաց, որ տէրս ինձ տուեց։

EMILIA.
Բոզ կանչեց նրան։ Մի գռեհիկ գինով Այդպիսի անուն չէր տայ իր քածին։

IAGO.
Եւ ինչի՞ համար։

DESDEMONA.
Չգիտեմ։ Միայն ես այնքան գիտեմ, որ այդ բանը չեմ։

IAGO.
Մի՛ք լա, տիրուհիս, մի՛ք լա։ Ի՜նչ փորձանք։

EMILIA.
Սրա՛ համար էր, որ մերժեց այնքան լաւ առաջարկներ, Թողեց հայր, երկիր եւ բարեկամներ, Որ պոռնի՞կ կոչուի։ Մարդ լաց չլինի՞։

DESDEMONA.
Իմ չար բախտիցն է։

IAGO.
Շա՛տ ամօթ նրան։ Որտեղի՞ց խելքին այդ քամին փչեց։

DESDEMONA.
Երկինքը գիտէ։

EMILIA.
Թող կախուեմ, եթէ մի պիղծ սրիկայ, Քսու, բանսարկու մի թշուառական, Մի երեսապաշտ, քծնող անզգամ Որեւէ պաշտօն շահելու համար Այս զրպարտանքը սարքած չլինի։ Կախուե՛մ, թէ ճիշտ չէ։

IAGO.
Վա՛հ, այդպիսի մարդ չկայ աշխարհում, կարելի բան չէ։

DESDEMONA.
Եթէ լինի էլ, թող Աստուած ների։

EMILIA.

Պարանը՛ների, դժոխքը՛ ծամի նրա կմախքը։ Ինչո՞ւ տիկնոջս պոռնիկ անուն տան։ Ո՞վ է նրա հետ մտերիմ եղել. Ու՞ր, ե՞րբ, ի՞նչ ձեւով, ի՞նչ երեւոյթ կայ այդպիսի բանի։ Մի պիղծ սրիկայ խաբել է մաւրին, Մի առաջնակարգ ստոր սրիկայ, մի փնթի սրիկայ։ Օ՛, երկի՛նք, ինչո՞ւ այսպիսի կեղտոտ արարածներին Չես խայտառակում եւ ամէն ազնիւ մարդու ձեռքի մէջ Մի մտրակ դնում, որ մերկ մտրակի այդ թշուառներին Երկրի մէկ ծայրից մինչեւ միւս ծայրը՝ Հէնց արեւելքից մինչեւ արեւմուտք։

IAGO.

Այդպէս մի՛ պոռա, ձայնդ դուրս է գնում։

EMILIA.

Թո՛ւի դրանց վրայ։ Ճիշտ մի այդպիսի փուչ կենդանի էր, Որ խելքիդ աստառն երես էր շինել եւ քո մտքի մէջ իմ եւ մաւրի վրայ կասկած էր ձգել։

IAGO.

Դու խենթ ես, գնա՛։

DESDEMONA.

Օ՛, բարի՛ Եագո, Ի՞նչ պէտք է անեմ, որ նրա սիրտը կրկին ձեռք բերեմ։ Ազնիւ բարեկամ, գնա նրա մօտ։ Երդւում եմ հէնց այս երկնքի լոյսով, Չգիտեմ՝ ինչպէս բարկացրի նրան։ Չոքում եմ այստեղ. Թէ երբեւիցէ նրա սիրոյ դէմ մեղանչած լինեմ, Խօսքով, խորհրդով, ո՞ւր մնաց՝ գործով։ Աչքս, ականջս կամ թէ որեւէ զգայարանս Ուրիշ անձի վրայ հիացած լինի, Եւ եթէ նրան այժմ էլ չեմ սիրում եւ միշտ չեմ սիրել Եւ չեմ սիրելու մինչեւ յաւիտեան խանդակաթ սիրով, Թէկուզ ինձ վանի մուրացկանի պէս, Թող որ փրկութեան երես չտեսնե՛մ։ Անսիրութիւնը շատ բան է կարող,- Եւ նա կարող է իր անսիրութեամբ կեանքս կործանել, Բայց երբեք իմ սէրն արատաւորել։ Չեմ կարող ասել «պոռնիկ». Զզւում եմ բառը արտասանելուց, Բայց այն գործն անել, որ այդ տիտղոսին արժանի լինի, Աշխարհի բոլոր ունայնութիւնների համագումարը Ինձ չէր հրապուրի։

IAGO.

Խնդրեմ, մի՛ յուզուէք։ Տրամադրութիւնը տեղը չի եղել. Պետութեան գործից յուզուած է եղել եւ ձեր վրայ է իր մաղձը թափել։

DESDEMONA.

Երնեկ այդ լինէր եւ ոչ ուրիշ բան։

IAGO.

Հէնց այդ է միայն, հաւատացէք ինձ։ Գնացէք ներս, մի՛ք լա։

[Desdemona and Emilia exit as Rodrigo enters.]

IAGO [cont.]
Ի՞նչ կայ, Ռոդրիգո՛։

RODERIGO.
Տեսնում եմ՝ ինձ հետ շիտակ չես վարւում։

IAGO.
Ինչպէ՞ս ոչ շիտակ։

RODERIGO.
Ամէն օր բան ես հնարում եւ ինձ խաղացնում ես, Եագո։ Հիմա տեսնում եմ, որ ինձ աւելի արգելք ես դառնում ամէն պատեհութիւնից, քան թէ ամենափոքրիկ ձեռնտուութիւնն ես անում։ Վճռել եմ այլեւս չհամբերել, ինչ էլ որ յիմարաբար մինչեւ հիմա տարել եմ, չեմ ուզում առանց աղմուկի բոլորը կուլ տալ։

IAGO.
Ուզո՞ւմ ես լսել, Ռոդրիգո։

RODERIGO.
Բա՛հ, այդ խօսքերից շատ եմ լսել, քո ասածներիդ եւ արածներիդ մէջ ոչ մի խնամութիւն չկայ։

IAGO.
Դու անիրաւ տեղն ես ինձ մեղադրում։

RODERIGO.
Երբեք, այլ միայն իրաւունքով։ Բոլոր ունեցած-չունեցածս ձեռքից տուել եմ։ Այնքան գոհարներ, որ դու ես ինձնից առել՝ Դէզդեմոնային տալու համար, բաւական էին մի ուխտեալ միանձնուհի գլխից հանելու։ Ամէն անգամ ասել ես, որ նա ընդունեց եւ փոխարէնը յոյսեր տուեց եւ խոստացաւ շուտով ուշադրութիւն անել եւ ծանօթանալ ինձ հետ։ Բայց այդ բոլորից ոչինչ չեմ տեսնում։

IAGO.
Լաւ, շարունակիր, շատ լաւ։

RODERIGO.
«Շատ լաւ, շարունակի՛ր»։ Չեմ կարող շարունակել, մա՛րդ։ Շատ լաւ էլ չէ, ձեռքս վկայ։ Ասում եմ, որ արածդ կեղտոտ բան է, եւ սկսում եմ հասկանալ, որ ինձ ձեռք ես առել։

IAGO.
Շատ լաւ։

RODERIGO.
Քեզ ասում եմ, որ շատ լաւ չէ։ Կը գնամ, Դէզդեմոնային կ'ասեմ ով լինելս։ Եթէ գոհարներս ետ կը տայ, ես էլ ձեռք կը քաշեմ եւ ներողութիւն կը խնդրեմ ապօրինի հետապնդումիս համար, եթէ ոչ, լաւ իմացիր, որ քեզնից հաշիւ եմ պահանջելու։

IAGO.
Ասելիքդ ասացի՞ր։

RODERIGO.
Այո՛, եւ ինչ որ ասացի, երդւում եմ, որ կ'անեմ։

IAGO.
Լաւ, հիմա տեսնում եմ, որ ոգի կայ մէջդ, եւ այս րոպէից սկսում եմ աւելի լաւ գաղափար ունենալ քո մասին։ Ձեռքդ տուր, Ռոդրիգո, իրաւունք ունես ինձ յանդիմանելու։ Բայց եւ այնպէս, երդւում եմ, քո գործի մէջ բոլորովին շիտակ եմ վարուել։

RODERIGO.
Չի երեւում։

IAGO.
Ճիշտ է, չի երեւում, եւ կասկածանքդ խելքի եւ դատողութեան հակառակ չէ։ Բայց լսիր, Ռոդրիգո։ Եթէ իսկապէս քո մէջ կայ այն բանը, որ հիմա աւելի, քան երբեք հաւատում եմ, թէ կայ, այսինքն՝ կամք, քաջասրտութիւն եւ արիութիւն, ցոյց տուր այս գիշեր եւ եթէ վաղը գիշեր Դէզդեմոնային չուայելես, ճամփայ դիր ինձ այս աշխարհից դաւաճանութեամբ եւ թակարդ լարիր կեանքիս դէմ։

RODERIGO.
Լաւ, ասա տեսնենք։ Խելքի գալո՞ւ բան է, լինելո՞ւ բան է, թէ՞ ոչ։

IAGO.
Պարոն, Վենետիկից յատուկ պաշտօնեայ է եկել, որ Կասսիոյին նշանակի Օթելլոյի տեղ։

RODERIGO.
Ճի՞շտ ես ասում։ Ուրեմն Օթելլոն եւ Դէզդեմոնան Վենետի՞կ են վերադառնում։

IAGO.
Ո՛չ, Օթելլոն գնում է Մաւրիտանիա եւ գեղեցիկ Դէզդեմոնային էլ տանում է իր հետ. միայն թէ մի բան պատահի, որ նրան ստիպի աւելի երկար մնալ այստեղ, եւ դրա միակ միջոցը Կասսիոյին մէջտեղից վերացնելն է։

RODERIGO.
Ի՞նչ է նշանակում «մէջտեղից վերացնել»։

IAGO.
Պարզ բան է. այնպէս անել, որ նա չկարողանայ Օթելլոյի տեղը բռնել. ուղեղը ցրել։

RODERIGO.
Եւ ուզում ես, որ ե՛ս անեմ այդ բանը, չէ՞։

IAGO.
Այո՛, եթէ քաջութիւն ունես շահդ եւ իրաւունքդ պաշտպանելու։ Կասսիոն այս գիշեր մի պոռնիկի տանը ընթրիքի է գնալու. ես էլ գնալու եմ այնտեղ։ Նա դեռ անտեղեակ է, թէ ի՛նչ մեծ բախտի եւ պատուի է արժանացել։ Եթէ մի տեղ թաքնուես եւ սպասես նրա դուրս գալուն, եւ ես այնպէս կը յարմարեցնեմ, որ այդ բանն ընկնի տասներկուսի եւ մէկի մէջտեղը։ Այն ժամանակ նրա գլխին ինչ փորձանք որ ուզես, կարող ես բերել։ Ես էլ հեռու չեմ լինի, քեզ օգնութեան կը գամ, եւ նա մեր երկուսի ձեռքից չի ազատուի։ Ի՞նչ ես շշմել ու կանգնել, եկ ինձ հետ գնանք։ Ես քեզ կ'ապացուցեմ որ նրա մահը այնպէս անհրաժեշտ բան է մեզ համար, որ ինքդ քեզ պարտաւոր կը զգաս նրան անհետացնելու։ Ընթրիքի ժամն է վաղուց, եւ գիշերը անց է կենում, դե՛հ, գործի։

RODERIGO.
Դեռ լաւ համոզուած չեմ։

IAGO.
Կը համոզուես։

[Both exit.]

][][

ACT IV. SCENE III.
Cyprus. Another Room in the Castle. Othello, Lodovico, Desdemona, Emilia and Attendants enter.

LODOVICO.
Խնդրում եմ, տէր իմ, սրանից աւել նեղութիւն մի՛ կրէք։

OTHELLO.
Օ՛, ներողութի՛ւն, մի քիչ քայլելը լաւ է ինձ համար։

LODOVICO.
Բարի գիշեր, տիկին, շնորհակալութիւն ձեր ազնուութեան։

DESDEMONA.
Եւ բարի գալուստ ձերդ յարգութեան։

OTHELLO.
Գալի՞ս էք, տէր իմ։- Է՜յ, Դէզդեմոնա ...

DESDEMONA.
Տէ՜ր իմ։

OTHELLO.
Գնա եւ իսկոյն անկողին մտիր, ես մէկ րոպէից կը վերադառնամ։ Սպասուհուդ էլ արձակիր։ Արա, ինչպէս ասում եմ։

DESDEMONA.
Լաւ, տէր իմ։

[Othello, Lodovico and Attendants all exit]

EMILIA.
Հիմա ինչպէ՞ս է։ Հիմա աւելի հանդարտ է թւում։

DESDEMONA.
Ասաց, թէ իսկոյն կը վերադառնայ։ Ինձ էլ պատուիրեց՝ անկողին մտնեմ եւ քեզ արձակեմ։

EMILIA.
Եւ ինձ արձակէ՞ք։

DESDEMONA.
Այդպէս հրամայեց։ Ուրեմն տուր ինձ գիշերազգեստս, սիրելի Էմիլիա, եւ մնաս բարով։ Հիմա չպէտք է նրան բարկացնենք։

EMILIA.
Երնեկ թէ նրան տեսած չլինէիք։

DESDEMONA.
Այդպէս մի՜ ասիր։ Իմ սէրը նրան այնպէս փարած է, Որ նոյնիսկ նրա կոշտութիւնները,

պարսաւանքները, խոժոռումները, - գնդասեղները դուրս քաշիր, խնդրեմ, - Ինձ համար հմայք եւ հրապոյր ունեն։

EMILIA.
Այն սաւանները քաշել եմ արդէն անկողնի վրայ։

DESDEMONA.
Բոլորը մէկ է։ Տէ՜ր Աստուած, ինչպէ՜ս խօլ մտքեր ունենք։ Թէ քեզնից առաջ մեռնեմ, Էմիլիա, Այն սաւաններից մէկի մէջ, խնդրեմ, պատանիր դու ինձ։

EMILIA.
Վա՜յ, ի՞նչ խօսքեր են։

DESDEMONA.
Էմիլիա, մայրս մի նաժիշտ ունէր՝ Բարբարա անունով։ Խեղճը սիրում էր, եւ իր սիրածը շռշորդ դուրս եկաւ եւ նրան լքեց։ Մի ուռենու երգ գիտէր, մի հին բան, Որ նրա բախտին յարմար էր գալիս, Եւ նա, այդ երգը երգելով, մեռաւ։ Այդ երգն այս գիշեր մտքիցս չի ելնում. Սիրտս ուզում է, որ գնամ նստեմ՝ գլուխս թեք արած եւ երգեմ այն խեղճ Բարբարայի պէս։ Շուտ արա, խնդրեմ։

EMILIA.
Ուզո՞ւմ էք՝ բերեմ գիշերազգեստը։

DESDEMONA.
Չէ, գնդասեղներն այստեղ դուրս քաշիր։ Այս Լոդովիկոն շնորհքով մարդ է։

EMILIA.
Եւ շա՜տ գեղեցիկ։

DESDEMONA.
Լաւ խօսել գիտէ։

EMILIA.
Վենետիկում մի տիկին եմ ճանաչում, որ բոբիկ ոտքով Երուսաղէմ կ'երթար, եթէ կարողանար շրթունքը դիպցնել նրա ստորին շրթունքին։

DESDEMONA.
[Singing.]
The poor soul sat sighing by a sycamore tree,
Sing all a green willow.

Her hand on her bosom, her head on her knee,
Sing willow, willow, willow.
The fresh streams ran by her, and murmur'd her moans,
Sing willow, willow, willow;
Her salt tears fell from her, and soften'd the stones;—

DESDEMONA [cont.]
Շտապիր խնդրեմ, նա շուտով կը գայ։
[Sings.]
Sing all a green willow must be my garland.
Let nobody blame him, his scorn I approve,—
Ո՛չ, հետեւեալ տունը այս չէ։ Սը՛ս, ո՞վ է դուռը զարկում։

EMILIA.
Քամին է։

DESDEMONA.
[Sings.]
I call'd my love false love; but what said he then?
Sing willow, willow, willow:
If I court mo women, you'll couch with mo men.
Ուրեմն գնա, բարի գիշեր։ Աչքերս քոր են գալիս, արդեօք լացի նշա՞ն է։

EMILIA.
Ոչնչի նշան չէ։

DESDEMONA.
Այդպէս եմ լսել, օ՜հ, այս մարդերը՜, մարդերը՜... Ճի՛շտ, խղճիդ առաջ, ասա, Էմիլիա, Կարծո՞ւմ ես իրաւ, թէ կնիկներ կան, Որոնք խաբում են այնպէս բիրտ կերպով ամուսիններին։

EMILIA.
Կան, ի հարկէ, կան։

DESDEMONA.
Իսկ դու կ'անէի՞ր, թէկուզ աշխարհը քեզ պարգեւ տային։

EMILIA.
Անշուշտ, կ'անէի։ Դուք չէի՞ք անի։

DESDEMONA.
Ո՛չ, երդւում եմ ես երկնքի լոյսով։

EMILIA.
Երկնքի լոյսով ինչո՞ւ կ'անէի, մթնում կ'անէի։

DESDEMONA.
Իրա՞ւ կ'անէիր, եթէ աշխարհը քեզ պարգեւ տային։

EMILIA.
Ամբողջ աշխարհը ահագին բան է. Շատ խոշոր գին է մի այդքան փոքրիկ յանցանքի համար։

DESDEMONA.
Չէ, հաստատ գիտեմ, դու չէիր անի։

EMILIA.
Չէ, հաստատ գիտեմ, շատ լաւ կ'անէի եւ անելուց յետոյ՝ ետ կ'անէի։ Պարզ բան է, մի մատանու համար, մի քանի կանգուն կերպասի, մի շրջազգեստի, մի գլխարկի կամ թէ այդ տեսակ մանր-մունր բաների համար չէի անի, բայց ամբո՞ղջ աշխարհի համար։ Վա՛հ, ո՞վ է, որ իր ամուսնուն չխաբի՝ նրան թագաւոր դարձնելու համար։ Ես քաւարանին էլ կը յօժարուէի դրա համար։

DESDEMONA.
Անիծուած լինեմ, թէ այդպիսի մեղք գործեմ, թէկուզ ամբողջ աշխարհն էլ ինձ տան։

EMILIA.
Բայց մեղքը աշխարհի միջումն է մեղք, եւ երբ աշխարհը ձեր նեղութեան փոխարէն ձեռք բերած լինէք, դա կը լինի մի մեղք ձեր սեփական աշխարհի մէջ, եւ դուք ինքներդ կարող էք իսկոյն մեղքը չքմեղել։

DESDEMONA.
Չեմ կարծում, որ այդպիսի կին գոյութիւն ունենայ։

EMILIA.
Մէկի տեղ տասը, եւ դեռ այնքան շատ, Որ կը լցնէին հէնց այն աշխարհը, որ ձեռք բերէին։ Բայց ես կարծում եմ, որ եթէ կանայք ճամփից շեղւում են. Ամուսիններն են միայն մեղաւոր։ Կամ իրենց պարտքը կատարելու մէջ դանդաղանում են Եւ կա՛մ մեր գանձը տանում, թափում են այլ գոգերի մէջ, Կա՛մ բռնկւում են յիմար նախանձից Եւ զրկում են մեզ ազատութիւնից, կա՛մ ծեծում են մեզ, Կա՛մ չարութիւնից պակասեցնում են մեր օրածախսը։ Բա՛հ, ի՞նչ ասել է, մենք էլ մաղձ ունենք. Թէեւ բարի ենք, բայց ոխ էլ ունենք. Թող լաւ իմանան ամուսինները, Որ իրենց կանայք, ճիշտ իրենց նման,

զգացում ունեն. Նրանք էլ տեսնում եւ հոտոտում են, Եւ քիմք էլ ունեն թէ՛ քաղցրի համար եւ թէ՛ թթուի։ Ի՞նչ ասել է դա, որ թողնում են մեզ եւ նորին բռնում։ Զուարճութիւ՞ն է. այո՛, կարծում եմ։ Ցանկութիւնի՞ց է դա ծնունդ առնում, այո՛, կարծում եմ։ Թուլութիւնի՞ց է այդ սխալանքը, այո՛, այդ էլ կայ։ Լաւ, մենք ցանկութիւն, զուարճութեան սէր, թուլութիւն չունե՞նք, Ինչպէս այրերը։ Թող, ուրեմն, նրանք լաւ վարուեն մեզ հետ, Կամ գէթ իմանան, որ եթէ երբեք մենք վատ ենք անում, Նրանց վատ վարքն է մեզ սովորեցնում։

DESDEMONA.
Գնա, բարի գիշեր։ Թող ինձ երկինքը այնպիսի վարք տայ, Որ ոչ թէ վատից ես էլ վատանամ, Այլ վատը տեսնեմ, ինքս լաւանամ։

[Both exit.]

][][

ACT V. SCENE I.
Cyprus. A Street. Iago and Roderigo enter.

IAGO.
Եկ այստեղ, կանգնիր այս մութի ետեւ. նա իսկոյն կը գայ։ Պատուական սուրդ դուրս քաշած պահիր եւ թունդ ներս խրիր։ Շուտ, շուտ։ Մի՛ վախիր, ես էլ արմունկիդ կանգնած կը լինեմ. Դա մեզ կը ստեղծի կամ կը կործանի։ Յիշիր այդ բանը. եւ լարիր բոլոր վճռականութիւնդ։

RODERIGO.
Ձեռքիս մօտ կանգնիր, գուցէ ես վրիպեմ։

IAGO.
Այստեղ եմ, կողքիդ։ Համարձակ եղիր եւ լաւ դիրք բռնիր։

[Retires to a little distance.]

RODERIGO.
Այս գործն ինձ շատ էլ չի ոգեւորում, Թէեւ համոզիչ պատճառներ բերեց։ Բայց մի մարդու կեանքն ի՞նչ մի մեծ բան է։ Եկ, սուր, թող մեռնի։ [Waits.]

IAGO.
Այնքան քորեցի այս նոր պալարը, մինչեւ բորբոքուեց. Կատաղում է այժմ։ Հիմա թէ՛ Կասսիոն սրան սպանի, Թէ՛ սա՝ Կասսիոյին, թէ՛ երկուսն իրար, Որ ձեւն էլ լինի, շահ է ինձ համար։ Եթէ Ռոդրիգոն կենդանի մնայ, Ետ կը պահանջի այնքան ոսկիներն ու գոհարները, Որ ես կորզել եմ որպէս ընծաներ

Դէզդեմոնային։ Ո՛չ, դա չի լինի։ Իսկ եթէ Կասսիոն կենդանի մնայ, Նրա կեանքի մէջ մի ամենօրեայ գեղեցկութիւն կայ, Որ ինձ նրա մօտ տգեղացնում է։ Բացի դրանից, Մաւրը կարող է իմ ասածները յայտնել Կասսիոյին, Եւ դա կարող է ինձ շատ թանկ նստել։ Ո՛չ, պէտք է մեռնի։ Թող լինի, ահա, իր ոտքի ձայնն է։

[Cassio enters.]

RODERIGO.
Հա՛, ճանաչում եմ իր ոտքի ձայնը։ Մեռի՛ր, սրիկայ։

[Attacks Cassio.]

CASSIO.
Այդ զարկդ տունս քանդած կը լինէր, եթէ իմ զրահը քո ենթադրածից ամուր չլինէր. Այժմ քոնը փորձենք։

[Draws his sword and wounds Roderigo.]

RODERIGO.
Օ՛, սպանե՛ց ինձ։

[Iago rushes forward, cuts Cassio behind the leg then exits.]

CASSIO.
Ոտք՛ս, յաւիտեան հաշմանդամ դարձայ։ Էհէ՛յ, օգնութիւն, մարդասպանութիւն, մարդասպանութի՛ւն։

[Othello enters.]

OTHELLO.
Կասսիոյի ձայնն է։ Եագոն պահել է իր տուած խօսքը։

RODERIGO.
Ես, անազնի՛ւս։

OTHELLO.
Ճի՛շտ որ այդպէս է։

CASSIO.
Էհէ՛յ, օգնութիւն... ճրա՛գ... վիրաբո՛յժ։

OTHELLO.
Նա է։ Քա՜ջ Եագո, պարկեշտ եւ ուղիղ, Որ բարեկամիդ եղած զրկանքը այսպէս ազդում է Քո ազնիւ սրտին։ Քեզնից դաս կ'առնեմ։ Գողտրիկ, սիրականդ ընկած է տապաստ, Քո պիղծ օրհասն էլ գալիս է շտապ։ Գալիս եմ, պոռնիկ։ Ջնջուեցին սրտիցս այն հմայքները, քո այն աչքերը՜։ Լկտանքով պղծուած քո անկողինը Լկտի արիւնով պէտք է շաղախուի։

[As Othello exits Lodovico and Graziano enter.]

CASSIO.
Էհէ՜յ, օգնութի՜ւն, պահապան չկա՞յ, մի անցորդ չկա՞յ։ Մարդասպանութի՜ւն, մարդասպանութի՜ւն։

GRAZIANO.
Պէտք է մի փորձանք պատահած լինի, ահաւո՜ր ձայն է։

CASSIO.
Օգնութի՜ւն։

LODOVICO.
Լսիր։

RODERIGO.
Անզգա՜մ սրիկայ։

LODOVICO.
Մի քանի հոգու հեծեծանքներ են. ի՜նչ մութ գիշեր է։ Սրանք կարող են հնարքներ լինել. Վտանգաւոր է ինքներս մենակ ձայնի կողմ գնանք։

RODERIGO.
Ոչ ոք չի՞ գալիս։ Արիւնս կ'երթայ, մինչեւ որ մեռնեմ։

LODOVICO.
Սը՜ս։

[Iago enters with a lamp in his hand.]

GRAZIANO.
Մի մարդ է գալիս, նայիր, շապիկով, ճրագով ու զէնքով։

IAGO.
Ո՞վ է, ի՞նչ ձայն է օգնութեան կանչում։

LODOVICO.
Մենք չենք իմանում։

CASSIO.
Այստեղ եմ, այստեղ, ի սէր Աստծոյ. Հասէք օգնութեան։

IAGO.
Ի՞նչ է պատահել։

GRAZIANO.
Ա՛հ, Օթելլոյի դրօշակիրն է սա, որչափ տեսնում եմ։

LODOVICO.
Այո՛, նա ինքն է. շա՛տ սրտոտ մարդ է։

IAGO.
Ովքե՞ր էք այդտեղ այդպէս ողբագին օգնութեան կանչում։

CASSIO.
Եագո՛, ա՛խ, ո՛տքս, սրիկաները տունս քանդեցին։ Օգնութիւն տուր ինձ։

IAGO.
Վա՛յ ինձ, տեղակալ, ի՞նչ սրիկաներ։

CASSIO.
Կարծեմ թէ մէկը այս մօտերքումն է. չի կարող փախչել։

IAGO.
Ա՛յ դաւաճաններ։

RODERIGO.
Ովքե՞ր էք այդտեղ, օգնութեան եկէք։ Օ՛, օգնեցէք ինձ։

CASSIO.
Մէկը հէնց դա է։ Մարդասպա՜ն սրիկայ, ա՛յ դու սրիկայ։

[Iago stabs Rodrigo.]

RODERIGO.
Անիծեա՛լ Եագո, դիւային դու շուն։

IAGO.
Մթնում սպանել։ Ու՞ր են արնախում աւազակները։ Այսպէս լո՞ւռ քաղաք, մարդասպանութի՛ւն, մարդասպանութի՛ւն, Ի՞նչ մարդիկ էք դուք, չա՞ր էք, թէ՞ բարի։

LODOVICO.
Առաջ փորձեցէք, յետոյ գովեցէք։

IAGO.
Սինեօր Լոդովիկո՞ն։

LODOVICO.
Նա ինքը, պարոն։

IAGO.
Ա՜խ, ներողութիւն. Այստեղ Կասսիոյին չարագործ մարդիկ վիրաւորել են։

GRAZIANO.
Կասսիոյի՞ն։

IAGO.
Այո։ Ինչպէ՞ս էք, եղբայր։

CASSIO.
Ոտքս կոտրել են, երկու մաս արել։

IAGO.
Աստուած ո՛չ անի։ Ճրա՛գ, պարոններ, հէնց իմ շապիկով վէրքը կը կապեմ։

[Bianca enters.]

BIANCA.
Ի՞նչ կայ, հէ՜յ, ո՞վ է օգնութեան կանչում։

IAGO.
Ով է կանչո՛ւմ։

BIANCA.
Օ՛, իմ սիրելի՛, իմ անո՛ւշ Կասսիո՛։ Օ՛, Կասսիո՛, Կասսիո՛...

IAGO.
Ա՛յ դու պիղծ պոռնիկ։ Կասսիո, ունե՞ք դուք որեւէ կասկած, թէ ովքեր են ձեզ այսպէս հաշմացրել։

CASSIO.
Ո՛չ։

GRAZIANO.
Ցաւում եմ, որ ձեզ այսպէս եմ գտնում։ Ես գալիս էի ձեզ որոնելու։

IAGO.
Շուտ, մի ծնկակապ։ Հա, այսպէս, եղաւ։ Ա՛հ, մի պատգարակ, որ սրան տանենք։

BIANCA.
Ուշքից գնում է, վա՛յ, Կասսիո՛։ Կասսիո՛։

IAGO.
Պարոններ, լսէք։ Լուրջ կասկած ունեմ, Որ այս խայտառակն այս ոճիրի մէջ մատ է ունեցել։ Մի քիչ համբերիր, սիրելի Կասսիո։ Մի ճրագ տուէք։ Տեսնեմ այս դէմքը ծանո՞թ է, թէ՞ ոչ։ Վա՛յ, իմ սիրելի հայրենակիցը եւ բարեկամը՞, Ռոդրիգո՞ն, ո՛չ, ո՛չ։ Այո, նա ինքն է։ Երկի՛նք, Ռոդրիգո՛ն։

GRAZIANO.
Այն վենետիկցի՞ն։

IAGO.
Նա ինքը, տէր իմ։ Ճանաչո՞ւմ էիք։

GRAZIANO.
Ճանաչո՞ւմ, այո՛։

IAGO.
Սինեօր Գրացիանո՞. խնդրեմ, ներէք ինձ։ Այս արիւնահեղ դէպքերի մեղքն է, Որ անուշադիր եղայ ձեր հանդէպ։

GRAZIANO.
Հոգ չէ. ուրախ եմ ձեզ հանդիպելուս։

IAGO.
Ինչպէ՞ս էք, Կասսիո, ա՛հ, մի պատգարա՛կ։

GRAZIANO.
Սա Ռոդրիգո՞ն է։

IAGO.
Նա է, նա ինքը։

[A stretcher is brought in.]

IAGO [cont.]
Ա՛հ, ի՞նչ լաւ եղաւ այս պատգարակը։ Հիմա մի լաւ մարդ թող զգուշութեամբ սրան տուն տանի. ես էլ շուտ գնամ եւ զօրապետի բժշկին բերեմ։ [To self.] Իսկ դու, այ կնիկ, նեղութիւն մի կրիր։ Կասսիո, այս մարդը, որ վիրաւորուած ընկած է այստեղ, Իմ բարեկամս էր։ Ձեր եւ նրա մէջ մի բա՞ն կար արդեօք։

CASSIO.
Ոչինչ, ես նրան չեմ էլ ճանաչում։

IAGO.
[To self.] Ա՛հ, գունատւո՞ւմ ես։ Հէյ, եկէք, սրան դուրս տարէք, բաց օդ։

[Cassio and Rodrigo are carried off-stage.]

IAGO [cont.]
Կեցէ՛ք, պարոններ։ այ կին, ինչո՞ւ ես այդպէս գունատուել։ Տեսնո՞ւմ էք՝ աչքերն ինչպէս մոլոր են։ Չէ՞, երբ որ այդպէս աչքերդ հառում ես, Ուրեմն դու մեզ շատ բաներ կ'ասես։ Մէկ լաւ նայեցէք սրան, խնդրում եմ. Նայեցէք վրան։ Տեսնո՞ւմ էք, պարոններ. Յանցանքը ինքը լեզու կը բանայ, Թէկուզ պապանձուեն ամէն լեզուներ։

[Emilia enters.]

EMILIA.
Վա՛յ ինձ, սա ի՞նչ է, սա ի՞նչ է, Եագո՛։

IAGO.
Այստեղ՝ մութի մէջ, փորձ է կատարուել Կասսիոյի վրայ, Ռոդրիգոն է եղել եւ այլ ընկերներ, որոնք փախել են։ Կասսիոն շատ սաստիկ վիրաւորուած է, Ռոդրիգոն՝ մեռած։

EMILIA.
Խե՜ղճ ազնիւ պարոն, խե՜ղճ ազնիւ Կասսիո։

IAGO.
Անառակութեան պտուղն այս է միշտ։ Խնդրեմ, Էմիլիա, Գնա Կասսիոյից հարցուփորձ արա, Թէ նա այս գիշեր որտեղ է ընթրել։ [To self.] Ի՞նչ է, դողո՞ւմ ես։

BIANCA.
Իմ տանն է ընթրել, բայց ես չեմ դողում։

IAGO.
Օհօ՜, քո տանը՞։ Լաւ, լաւ, եկ ինձ հետ, հրամայում եմ քեզ։

EMILIA.
Թո՜ւհ քեզ, թո՜ւհ, պոռնիկ։

BIANCA.
Ո՜չ, ես պոռնիկ չեմ, այլ նոյնքան պարկեշտ, Որքան դու, որ ինձ թքում-մրում ես։

EMILIA.
Որքան ե՞ս. թո՜ւհ քեզ։

IAGO.
Բարի՛ պարոններ, գնանք, Կասսիոյի վէրքերը կապենք։ Դու՛ էլ եկ, այ կին։ Մենք քեզ կը ստիպենք շատ բաներ պատմել։ Վազիր, Էմիլիա, գնա միջնաբերդ Եւ զօրապետին ու իր կնոջը պատմիր եղածը։ Եկէք, պարոններ, գնացէք առաջ։ [Aside.] Կա՛մ այս գիշեր բախտս կը շինի, Կա՛մ գլխով-ոտքով ինձ կը կործանի։

[All exit.]

][][

## ACT V. SCENE II.

Cyprus. A Bedchamber in the castle. Desdemona in bed asleep; a light burning. Othello enters.

### OTHELLO.

Պատճառն է, հոգիս, պատճառը՛։ Թողէք ձեր առաջ չանուանեմ ես այն, ողջախո՛հ աստղեր, Պատճառը միայն։ Սակայն արիւնը չեմ ուզում թափել, Չեմ ուզում խազել ձիւնից աւելի սպիտակ մորթը, Աւելի ողորկ, քան ալեբաստրը յուշարձանների։ Բայց մեռնի՛ պիտի, թէ ոչ՝ շատ մարդկանց կը դաւաճանի, Լոյսը հանգցնեմ եւ յետոյ ... լոյսը հանգցնեմ։ Եթէ քեզ մարեմ, բոցի պաշտօնեայ, Կարող եմ կրկին ետ տալ քեզ լոյսդ, երբ որ փոշմանեմ։ Բայց երբ քո՛ լոյսը մի անգամ մարեմ, Ո՛վ դու հրաշակերտ գերազանց բնութեան, Չգիտեմ՝ ու՛ր է պրոմեթէոսեան այն ջերմութիւնը, Որ լոյսդ կրկին վառել կարէնայ։ Երբ վարդը քաղեմ, չեմ կարող նորից կեանք բաշխել նրան. Պէտք է թառամի՛։ Թող դեռ հոտ քաշեմ իր թփի վրայ։

[He kisses her.]

### OTHELLO [cont.]

Օ՛, շունչ խնկաբոյր, քիչ է մնացել Համոզես նոյնիսկ Արդարութեանը, որ սուրը փշրի։ Ա՛խ, մէ՛կ էլ, մէ՛կ էլ։ Հէնց այսպէս եղիր, երբ մեռած լինես։ Ես քեզ կը սպանեմ, յետոյ կը սիրեմ։ Մէ՛կ էլ, եւ թող այս վերջինը լինի։ Երբեք չի եղել այսքան անուշ բան այսքան մահացու։ Պէտք է արտասուեմ, բայց սրանք անգութ արտասուքներ են։ Վիշտս նման է երկնային վշտի. Զարկում է նրան, որին սիրում է։

[She wakes.]

### DESDEMONA.

Ո՞վ է։ Օթելլո՞։

### OTHELLO.

Ես եմ, Դէզդեմոնա։

### DESDEMONA.

Չե՞ս գալիս քնես, սիրելիս։

### OTHELLO.

Աղօթք արե՞լ ես այս գիշեր, Դէզդեմոնա։

### DESDEMONA.

Այո՛, սիրելիս։

OTHELLO.
Եթէ յիշում ես մի մեղք, դեռ անհաշտ երկնային շնորհի եւ թողութեան հետ, շուտ ներում հայցիր։

DESDEMONA.
Վա՜յ ինձ, սիրելիս, միտքդ ի՞նչ է արդեօք։

OTHELLO.
Աղօթիր, եւ կարճ, ես ման եմ գալիս։ Չեմ ուզում սպանել անպատրաստ հոգիդ։ Ո՜չ, Աստուած չանի՜, չէի կամենայ հոգիդ սպանել։

DESDEMONA.
Սպանե՜լ։

OTHELLO.
Այո՜, սպանել։

DESDEMONA.
Ուրեմն Աստուած թող ինձ ողորմի։

OTHELLO.
Ամէն, ասում եմ իմ բոլոր սրտով։

DESDEMONA.
Եթէ այդպէս է, յոյս ունեմ, որ դու չես սպանի ինձ։

OTHELLO.
Հը՜մ...

DESDEMONA.
Բայց այնուհանդերձ սոսկում եմ քեզնից. Պէտք է իսկապէս մահացու լինես, Երբ որ աչքերդ այդպէս դառնում են։ Չգիտեմ ինչո՞ւ պէտք է վախենամ, երբ մեղք չեմ գործել, Սակայն զգում եմ, որ վախենում եմ։

OTHELLO.
Միտ բեր մեղքերդ։

DESDEMONA.
Մեղքս քո սէրն է։

OTHELLO.
Դրա համար է, որ պէտք է մեռնես։

DESDEMONA.
Անբնական մահ է, որ սպանում է սիրելու համար։ Վա՜յ ինձ, ինչո՞ւ ես շրթունքդ կրծում։ Արիւնածարաւ մի կիրք ցնցում է քո բոլոր կազմը։ Վատ նշաններ են, բայց դեռ յոյս ունեմ, Յոյս ունեմ, որ դրանք ինձ չեն սպառնում։

OTHELLO.
Լու՛ռ եւ հանդարտ կաց։

DESDEMONA.
Շատ լաւ, բայց ի՞նչ կայ։

OTHELLO.
Իմ այնքան սիրած այն թաշկինակը, որ ես քեզ տուի, Դու պարգեւել ես նոյնը Կասսիոյին։

DESDEMONA.
Ո՛չ, կեա՛նքս վկայ, ո՛չ, հոգի՛ս վկայ։ Կանչել տուր մարդուն եւ հարցում արա։

OTHELLO.
Հոգիս, զգոյշ կաց, երդմնազանցութիւն մի՛ անիր, զգո՛յշ, Մահուանդ անկողնում գտնուում ես այժմ։

DESDEMONA.
Այո՛, բայց դեռ ոչ մեռնելու համար։

OTHELLO.
Հէնց ա՛յս րոպէիս, ուրեմն մեղքդ պարզ խոստովանիր։ Երբ ամէն մի կէտ երդումով ժխտես, Դարձեալ չես կարող ցրել կամ խեղդել պիրկ համոզումս, Որից գոռում եմ։ Մեռնելու ես դու։

DESDEMONA.
Աստուա՛ծ, գթա ինձ։

OTHELLO.
Ամէ՛ն, ասում եմ։

DESDEMONA.
Բայց դու էլ գթա։ Երբե՛ք ես քո դէմ յանցանք չեմ գործել. Երբեք Կասսիոյին չեմ սիրել, երբե՛ք, Եթէ ոչ միայն այնպիսի սիրով,՝ Որպէս երկինքը թոյլատրում է մեզ ընդհանուր կերպով։ Ոչ մի յիշատակ չեմ

տուել նրան։

OTHELLO.
Երկինքը վկայ, իմ թաշկինակը նրա ձեռքին տեսայ։ Օ՛, երդմնադրո՛ւժ կին, այդ ձեւով սիրտս քարացնում ես դու. Եւ սպանութիւն կոչել ես տալիս իմ անելիքը, Ինչ որ ողջակէզ համարում էի։ Իմ աչքո՛վ տեսայ այն թաշկինակը։

DESDEMONA.
Գտել է, ուրեմն։ Ե՛ս չեմ ընծայել։ Կանչել տուր այստեղ. Թող խոստովանի ճշմարտութիւնը։

OTHELLO.
Խոստովանել է։

DESDEMONA.
Ի՞նչ, տէր իմ։

OTHELLO.
Թէ նա եղել է քեզ հետ։

DESDEMONA.
Ինչպէ՞ս, վա՞տ մտքով։

OTHELLO.
Այո՛։

DESDEMONA.
Ո՛չ, այդպիսի բան չի կարող ասել։

OTHELLO.
Այո՛, չի կարող, բերանը փակ է։ Պարկեշտ Եագոյին հրաման է տրուած այդ բանի մասին։

DESDEMONA.
Օ՛, կռահում եմ. ինչպէ՞ս, մեռա՞ծ է։

OTHELLO.
Ամէն մի մազը մի կեանք ունենար, Իմ մեծ վրէժը ստամոքս ունէր ամէնքի համար։

DESDEMONA.
Աւա՛ղ, այն խեղճին դաւաճանել են, ես էլ կորած եմ։

OTHELLO.
Պոռնի՛կ, իմ առաջ յանդգնում ես լա՞լ այն մարդու համար։

DESDEMONA.
Օ՜ վռնդիր ինձ, բայց մի՛ սպանիր։

OTHELLO.
Կորսուի՛ր, պոռնիկ։

DESDEMONA.
Վաղը սպանիր, գոնէ այս գիշեր կենդանի թող ինձ։

OTHELLO.
Եթէ դիմադրես։

DESDEMONA.
Մի կէս ժա՛մ։

OTHELLO.
Հիմա որ սկսեց, սպասել չկայ։

DESDEMONA.
Այնքան, որ միայն մի աղօթք ասեմ։

OTHELLO.
Էլ ուշ է։

[He strangles her.]

EMILIA.
[From outside.] Տէ՛ր իմ, hէ՛յ, տէ՛ր իմ, տէ՛ր իմ, hէ՛յ։

OTHELLO.
Այս ի՞նչ աղմուկ է։ Չի՞ մեռել, դեռ ո՞չ, ո՞չ բոլորովին։ Ես որ անգութ եմ, դարձեալ գութ ունեմ. Չեմ ուզում տանջանքդ երկարացնել։ Հը՛, այսպէս, այսպէս։

[He stabs Desdemona with his knife.]

EMILIA.
[From outside.] Օ՜, տէ՜ր իմ, տէ՜ր իմ։

OTHELLO.
Ո՞վ է։

EMILIA.
[From outside.] Օ՜, բարի՜ տէրս, մի բառ ասեմ ձեզ։

OTHELLO.
Հա՜, Էմիլիան է։ Սպասիր մի քիչ։ Մեռած է։ Եկած կը լինի Կասսիոյի մահը յայտնելու համար։ Շատ մեծ աղմուկ կար։ Հա՜, Էլ չի՞ շարժւում։ Լուռ, շիրիմի պէս։ Նե՞րս գայ. յարմա՞ր է։ Կարծեմ թէ նորից մի շարժում արեց։ Ո՜չ։ Ինչպէ՞ս անել։ Եթէ ներս մտնի, անպատճառ կ'ուզի կնոջս հետ խօսել։ Կնո՞ջս, կնո՞ջս, ի՞նչ կին. կին չունեմ։ Օ՜, անտանելի, օ՜հ, ողբալի ժամ ... Կարծես թէ հիմա արեւ ու լուսին պէտք է խաւարեն, եւ երկրագունդը, փոփոխութիւնից սոսկահար եղած, Բերանը բանայ։

EMILIA.
[From outside.] Աղաչում եմ, տէր, թոյլ տուէք, որ ձեզ երկու բառ ասեմ։ Օ՜, բարի տէրս։

OTHELLO.
Մոռացել էի քեզ. եկ ներս, Էմիլիա։ Կամաց, մի րոպէ։ Վարագոյրները քաշեմ։ Որտե՜ղ ես։ Դուռը բաց է անում։ Գալիս է Էմիլիան։ Ասելիքդ ի՞նչ է։

EMILIA.
Օ՜, բարի՜ տէրս, Մի սարսափելի մարդասպանութիւն գործուել է այնտեղ։

OTHELLO.
Ե՞րբ, հիմա՞։

EMILIA.
Այո՜, հէնց հիմա, տէր իմ։

OTHELLO.
Լուսնի մեղքն է այդ. Շատ աւելի է երկրին մօտեցել, քան թէ սովոր էր, եւ դա է մարդկանց խելագարացրել։

EMILIA.
Կասսիոն սպանեց Ռոդրիգո կոչուած մի վենետիկցու։

OTHELLO.
Ռոդրիգոն սպանուե՞ց, Կասսիո՞ն էլ սպանուեց։

EMILIA.
Կասսիոն չի սպանուել։

OTHELLO.
Կասսիոն չի՞ սպանուել։ Ա՛խ, աններդաշնակ մարդասպանութիւն, Քաղցրալուր վրէժը խռպոտ է դառնում։

DESDEMONA.
Օ՛, իզո՛ւր, իզո՛ւր սպանութիւն է։

EMILIA.
Վա՛յ, ի՞նչ ձայն է սա։

OTHELLO.
Դա՞, ի՞նչ ձայն։

EMILIA.
Վա՛յ ինձ, վա՛յ հոգուս, տիրոջս ձայնն էր։

[Othello unlocks and opens the door.]

EMILIA [cont.]
Օգնութի՛ւն, օգնութի՛ւն, հասէք, օգնութի՛ւն, Ա՛խ, խօսիր նորից, սիրելի տիկին, ա՛խ, Դէզդեմոնա, Անուշի՛կ տիկին, ա՛հ, խօսի՛ր, խօսի՛ր։

DESDEMONA.
Անմեղ եմ մեռնում։

EMILIA.
Ո՞վ է արել այս։

DESDEMONA.
Ոչ ոք, ես ինքս։ Մնաս բարով, Տուր իմ ողջոյնը բարի ամուսնուս։ Օ՛, մնաս բարով։ [Dies.]

OTHELLO.
Ո՞վ պէտք է նրան սպանած լինի։

EMILIA.
Աւա՛ղ, ո՞վ գիտէ։

OTHELLO.
Լսեցի՞ր, ասաց, որ ես չեմ արել։

EMILIA.
Այո՛, ինքն ասաց, պէտք է ճշմարիտ վկայութիւն տամ։

OTHELLO.
Իբրեւ ստախօս՝ գնաց ուղղակի այրող դժոխքը։ Ե՛ս եմ սպանել։

EMILIA.
Օ՛, աւելի սուրբ հրեշտակ էր ապա, եւ աւելի սեւ սատանայ ես դու։

OTHELLO.
Մոլորուել էր նա, պոռնիկ էր դարձել։

EMILIA.
Դու զրպարտում ես նրան, դեւ՛ ես դու։

OTHELLO.
Կե՛ղծ էր, ինչպէս ջուր։

EMILIA.
Թո՛նդ ես, ինչպէս հուր, որ կեղծ ես կոչում այնպէս էակին։ Օ՛, նա անկեղծ էր, ինչպէս մի հրեշտակ։

OTHELLO.
Կասսիոյի հարճն էր. ամուսնուդ հարցրու, թէ չես հաւատում. Օ՛, ես դժոխքի խորքերի խորքին արժան կը լինէի, թէ որ առանց արդար հիմքերի գործած լինէի։ Քո ամուսինը ամէն բան գիտէր։

EMILIA.
Իմ ամուսինը՞։

OTHELLO.
Քո ամուսինը։

EMILIA.
Թէ մեղանչե՞լ է ամուսնութեան դէմ։

OTHELLO.
Հա՛, Կասսիոյի հետ։ Եթէ պարկեշտ կին եղած լինէր նա, եւ Աստուած ուզէր մի ուրիշ աշխարհ ստեղծել նորից Մէ՛կ կտոր անբիծ զուտ ոսկեքարից, Նրան չէի փոխի այդ աշխարհի հետ։

EMILIA.
Իմ ամուսինը՞։

OTHELLO.
Այո՛, նա եղաւ առաջին անգամ աչքս բացողը։ Նա պարկեշտ մարդ է, ատում է այն տիղմը, որ փակչում է Չազիր գործերին։

EMILIA.
Իմ ամուսինը՞։

OTHELLO.
Այ կին, ի՞նչ պէտք կայ այդքան կրկնութեան, Այո՛, ասում եմ, քո ամուսինը։

EMILIA.
Օ՛, իմ տիրուհի՛ս... Սրիկայութիւնը խաղ է խաղացել խեղճ սիրոյ գլխին։ Ամուսինս ասի, թէ նա խարդախ էր։

OTHELLO.
Նա ինքը, այ կին։ Քո ամուսինը, խօսք չե՞ս հասկանում։ Իմ բարեկամը, քո ամուսինը, պարկե՛շտ, պարկե՛շտ Եագոն։

EMILIA.
Թէ նա է ասել, նրա չար հոգին Օրը կէս ցորեն փտի, փչանայ։ Պի՛ղծ սուտ է ասել. Իմ խեղճ տիկինը շատ էր սիրահար իր փուչ ընտրածին։

OTHELLO.
Հա՛։

EMILIA.
Ինչ կ'ուզես, արա։ Այդ գործը այնքան քիչ է արժանի արքայութեանը, Որքան դու՝ նրան։

OTHELLO.
Լաւ է, որ լռես։

EMILIA.
Քո մէջ կիսով չափ այնքան ուժ չկայ ինձ վնասելու, Որքան իմ մէջ կայ վնաս կրելու։ Յիմա՛ր, բթամիտ, տգէտ, ինչպէս կեղտ, մի բան ես արել ... Ի՞նչ փոյթ ինձ սուրդ։ Պէտք է աշխարհում խայտառակեմ քեզ, Թէկուզ քսան կեանք տուժելու լինեմ։ Օգնութի՛ւն, օգնութի՛ւն, հասէ՛ք, օգնութի՛ւն. Մաւրն սպանել է իմ խեղճ տիրուհուն ... Մարդասպանութի՛ւն, մարդասպանութի՛ւն։

[Montano, Gratiano and Iago enter.]

MONTANO.
Ի՞նչ է պատահել, ի՞նչ կայ, զօրապետ։

EMILIA.
Ա՛h, եկա՞ր, Եագո։ Հա՛, երեսդ պա՛րզ, Որ մարդիկ իրենց սպանութիւնը քո վզին դնեն։

GRAZIANO.
Ի՞նչ է պատահել։

EMILIA.
Թէ մարդ ես, հերքիր այս ապիրատին. Ասում է, թէ դու նրան ասել ես, որ նրա կինը Անպարկեշտ կին էր։ Գիտեմ՝ չես ասել։ Գիտեմ, այդպիսի սրիկայ չես դու։ Դէ խօսիր, խօսիր, սիրտս պայթում է։

IAGO.
Ես այն եմ ասել, ինչ մտածել եմ, Եւ ինչ ասել եմ, ինքն էլ տեսել է, թէ իսկ եւ ճիշտ է։

EMILIA.
Բայց ասե՞լ ես, թէ նա անառակ էր։

IAGO.
Այո՛, ասել եմ։

EMILIA.
Դու սուտ ես խօսել, մի գարշելի՛ սուտ, դժոխայի՛ն սուտ։ Հոգիս չփրկուի, սո՛ւտ է, չա՛ր սուտ է։ Նա՞ Կասսիոյի հետ. ասել ես, թէ նա Կասսիոյի՛ հետ էր։

IAGO.
Նրա հետ, տիկին։ Սո՛ւս, լեզուդ քաշիր։

EMILIA.
Լեզուս չեմ քաշի, ես պարտ եմ խօսել։ Տիրուհիս ահա մեռած, ընկած է իր անկողնի մէջ։

ԱՄԷՆՔԸ
Օ՛, Աստուած չանի՛։

EMILIA.
Եւ հէնց քո տուած զեկուցումներն են Այս սպանութեան պատճառը դարձել։

OTHELLO.
Ի՞նչ էք շուարել, պարոններ, ճիշտ է։ Ճշմարտութիւն է։

GRAZIANO.
Ին՛չ զարհուրելի ճշմարտութիւն է։

MONTANO.
Հրէշաւո՛ր արարք։

EMILIA.
Սրիկայութի՛ւն, սրիկայութի՛ւն, սրիկայութի՛ւն. Նոր եմ ըմբռնում, նոր եմ ըմբռնում, նոր եմ հոտն առնում։ Սրիկայութի՛ւն ... այն ժամանակն էլ դա մտքովս անցաւ ... Ես ինձ կը սպանեմ ցաւից ... օ՛հ, վա՛յ ինձ, սրիկայութի՛ւն։

IAGO.
Խելագարուե՞լ ես։ Հրամայում եմ քեզ. տուն գնա իսկոյն։

EMILIA.
Ազնիւ պարոններ, թո՛յլ տուէք՝ խօսեմ։ Գիտեմ, իմ պարտքն է սրան հնազանդուել, բայց ոչ թէ այժմ։ Ո՛վ գիտէ, Եագո, գուցէ տան երեւս չտեսնեմ երբեք։

OTHELLO.
Օ՛! Օ՛! Օ՛!

EMILIA.
Այո՛, տարածուիր գետին եւ գոռա ցաւից։ Դու մի այնպիսի անուշ եւ անմեղ էակ ես սպանել, Որի նմանը աշխարհ չի եկել։

OTHELLO.
[Standing up.] Նա լրբացել էր։ Չճանաչեցի ես ձեզ, մօրեղբայր. Այնտեղ փռուած է ձեր քրո՜ջ դուստրը, Եւ նրա շունչը հէնց այս ձեռքերը այժմ կտրեցին։ Գիտեմ, արարքս անգութ է թւում եւ զարհուրելի։

GRAZIANO.
Խե՜ղճ Դէզդեմոնա. աւա՜ղ, ուրախ եմ, որ հայրդ մեռաւ. Ամուսնութիւնդ մահացու եղաւ այն խեղճի համար։ Կսկիծն էր միայն, որ խզեց միջից ծերութեան թելը։ Եթէ նա հիմա կենդանի լինէր, Այս տեսարանը յուսահատութեան կը դրդէր նրան։ Այո՜, կ'անիծէր իր կողքին կանգնած բարի հրեշտակին Եւ կ'ընկնէր դժոխք։

OTHELLO.
Ողբալի՜ բան է... Բայց Եագոն գիտէր, թէ հազար անգամ նա Կասսիոյի հետ Պիղծ գործ էր գործել։ Կասսիոն իր բերնով խոստովանել է։ Եւ նա, փոխարէնն իր տարփածուի սիրագործութեան, Նրան էր տուել այն սիրոյ գրաւն ու յիշատակը, Որ իմ առաջին տուած ընծան էր։ Աչքովս տեսայ Կասսիոյի ձեռքին, մի թաշկինակ էր, Մի հին յիշատակ, մի նուէր, որ հայրս տուել էր մօրս։

EMILIA.
Երկի՜նք, հրեշտակնե՜ր։

IAGO.
Սու՜ս, ձայնդ կտրիր։

EMILIA.
Ո՜չ, պէտք է դուրս գայ, դուրս գայ. ե՞ս լռեմ... Ո՜չ, ես կը խօսեմ աւելի ազատ, քան հիւսիս հողմը։ Թող երկինք, մարդիկ եւ սատանաներ, Բոլորը, բոլորն ինձ ամօ՜թ գոռան, դարձեալ կը խօսեմ։

IAGO.
Խելքդ ժողովիր եւ գնա տունդ։

EMILIA.
Չեմ գնայ։

[Iago tries to stab Emilia.]

GRAZIANO.
Թո՜ւհ քեզ, սու՜ր քաշել մի կնոջ վրայ։

EMILIA.
Ո՜վ դու ապուշ մաւր, այն թաշկինակը, որ դու ասում ես, Ե՜ս դէպքով գտայ եւ տուի մարդուս։ Շատ եւ

շատ անգամ նա խիստ լրջօրէն ինձ աղաչել էր, Որ գողանայի, ինչ որ իսկապէս շատ անտեղի էր Այսպիսի չնչին մի բանի համար։

IAGO.
Անզգա՛մ պոռնիկ։

EMILIA.
Նա Կասսիոյին տա՛ր, ո՛չ, վա՛յ իմ գլխին, Ես ինքս գտայ եւ մարդուս տուի։

IAGO.
Կե՛ղտ, սուտ ես ասում։

EMILIA.
Երկինքը վկայ, ես սուտ չեմ ասում, սուտ չէ, պարոններ։ Մարդասպա՛ն ապուշ, քեզ պէս յիմարին այնպէս ազնիւ կի՞ն։

OTHELLO.
Միթէ՞ երկնքում ուրիշ քար չկայ, բացի կայծակից։ Ընտրեա՛լ սրիկայ։ Օթելլոն յարձակւում է Եագոյի վրայ։

[Iago stabs Emilia then flees.]

GRAZIANO.
Կինն ընկնում է վար. անշուշտ սպանեց այս խեղճ կնոջը։

EMILIA.
Ա՛յ, ա՛յ, ա՛յ, մեռա՛յ, օ՛հ, ինձ էլ դրէք տիրոջս կողքին։

GRAZIANO.
Նա փախաւ ձեռքից, իսկ կինն սպանուեց։

MONTANO.
Նենգամիտ սրիկա՛յ։ Առէք այս զէնքը, որ մաւրի ձեռքից յափշտակեցի։ Վազէք, փակեցէք դրսի դռները։ Չթողնէք փախչի, եթէ չբռնէք, գէթ սպանեցէք։ Ես էլ գնում եմ, որ գուցէ բռնեմ այն սրիկային։ Դժոխքի սրիկայ։

[Montano and Graziano exit.]

OTHELLO.
Կտրիճ չեմ այլեւս. Ամէն մի թզուկ խլում է սուրս։ Բայց ինչո՞ւ պէտք է դեռ պատիւն ապրի, Երբ որ մեռած է պարկեշտութիւնը։ Թող բոլո՛րն երթայ։

EMILIA.
Խե՛ղճ տիկին, ի՞նչ էր երգդ գուշակում։ Սը՛ս, լսո՞ւմ ես ինձ. թող կարապի պէս երգելով մեռնեմ։ [Sings:] Willow, willow, willow.
Մա՛ւր, նա սուրբ էր, նա քեզ սիրում էր, դու, անգո՛ւթ մաւր, Թող երանութեան երես չտեսնեմ, թէ սուտ եմ ասում։ Այժմ ասելով, ինչ մտածում եմ, մեռնում եմ, մեռնում։ [Dies.]

OTHELLO.
Մի այլ զէնք էլ կայ այս սենեակի մէջ. Սպանիական սուր՝ սառոյցով ջրած, Ահա, այստեղ է։ Մօրեղբայր, պէտք է այստեղից դուրս գամ։

GRAZIANO.
[Off-stage.] Եթէ փորձ անես, քեզ թանկ կը նստի։ Զէնք չունես, ուրեմն, ինքդ կը տուժես։

OTHELLO.
Ուրեմն ինձ նայիր եւ խօսիր ինձ հետ, Եթէ ոչ՝ անզէն կը ցատկեմ վրադ։

[Graziano enters.]

GRAZIANO.
Լաւ, ի՞նչ ես ասում։

OTHELLO.
Նայիր, զէնք ունեմ. Սրանից լաւը չի կապուել երբեք զինուորի կողքին։ Ես օր եմ տեսել, երբ որ այս փոքրիկ բազուկով միայն Եւ այս կուռ սրով արգելքնե՛ր եմ ես գետին տապալել՝ Քսան անգամ բարձր քո բոլոր ուժից։ Բայց ունա՛յն պարծանք ... ո՞վ կ'իշխի արդեօք իր բախտի վրայ։ Հիմա այդպէս չէ. մի վախիր ինձնից, զինուած էլ լինեմ։ Այստեղ է արդէն իմ ճամփորդութեան վերջին կայեանը, Իմ նաւարկութեան կէտ-նպատակը եւ ծովանիշը։ Ինչո՞ւ ես այդպէս սարսած ետ գնում, զուր է երկիւղդ։ Մի եղէգ ուղղիր Օթելլոյի դէմ, եւ նա վայր կ'ընկնի։ Ու՞ր գնա Օթելլոն։ Տեսնեմ, ինչպէ՞ս է հիմա երեսդ ... Շապկիդ պէս գունատ ... երբ հաշուի օրը իրար հանդիպենք, Այդ քո նայուածքը հոգիս երկնքից վար կը գլտորի, Եւ չար դեւերը կը բռնեն նրան։ Սառն ես, աղջիկս, սառն ես, ինչպէս քո զգաստութիւնը։ Օ՜, դու անիծեա՛լ, անիծեա՛լ ստրուկ։ Մտրակեցէք ինձ, ո՛վ սատանաներ, եւ քշեցէք ինձ Հեռու երկնային այս տեսարանից, Փչեցէք չորս կողմ բոլոր հողմերին, Խորովեցէք ինձ վառ ծծումբի մէջ, Թաթախեցէք ինձ հեղուկ կրակի յորձանքների մէջ։ Օ՜, Դէզդեմոնա՜, Դէզդեմոնա՜... մեռա՛ր ... Օ՜! Օ՜! Օ՜!

[Lodovico, Montano, Cassio carried in a chair, and Officers enter with Iago as prisoner.]

LODOVICO.
Ու՞ր է անզգոյշ այն տարաբախտը։

OTHELLO.
Այսինքն՝ այն մարդը, որ Օթելլո՞ն էր. ահա այստեղ եմ։

LODOVICO.
Ու՞ր է այն իժը. բերէք սրիկային։

OTHELLO.
Ոտքերին նայեմ, բայց առասպել է։ Եթէ դեւ ես դու, չեմ կարող սպանել։

[Stabs Iago.]

LODOVICO.
Խլեցէք սուրը։

IAGO.
Թէպէտեւ, պարոն, արիւնոտուել եմ, բայց չեմ սպանուած։

OTHELLO.
Ես էլ ուրախ եմ, որ չես սպանուած։ Ուզում եմ՝ ապրես։ Մահն, իմ կարծիքով, երջանկութիւն է։

LODOVICO.
Ո՛վ դու Օթելլո, դու, մի ժամանակ այնքան բարեսիրտ, Որ այժմ ընկել ես մի անիծեալի որոգայթի մէջ, Ի՞նչ անուն տանք քեզ։

OTHELLO.
Ինչ որ կամենաք։ Պատուոյ մարդասպան, եթէ կամենաք, Քանզի ոչ մի բան չեմ արել քէնից, այլ պատուի համար։

LODOVICO.
Այս պիղծը մասամբ խոստովանել է իր նենգութիւնը, Ճի՞շտ է, որ նրա հետ ծրագրել էիք Կասսիոյի մահը։

OTHELLO.
Այո՛։

CASSIO.
Բարի զօրապետ, ես ձեզ ոչ մի կերպ տեղիք չեմ տուել։

OTHELLO.
Հաւատում եմ այժմ, ներումն եմ խնդրում։ Խնդրեմ, հարց արա այս կիսադեւին, Թէ ինչի համար հոգիս ու մարմինս այսպէս թակարդեց։

IAGO.
Ոչինչ մի հարցնէք, ինչ գիտէք, գիտէք։ Այս րոպէից ետ մէկ բա՛ռ չեմ խօսի։

LODOVICO.
Եւ ոչ էլ նոյնիսկ աղօթքի՞ համար։

GRAZIANO.
Չարչարանքները լեզուդ կը բանան։

OTHELLO.
Եւ դու լաւ կանէս։

LODOVICO.
Տէր իմ, ձեզ ասեմ պատահածները, Ինչ որ, կարծում եմ, դեռ չէք իմանում։ Ահա մի նամակ, Որ գտնուած է այն Ռոդրիգոյի գրպանի միջում։ Ահա մի այլը։ Մէկը խօսում է Կասսիոյի մասին, Որին Ռոդրիգոն պէտք է սպանէր։

OTHELLO.
Ա՛յ դու սրիկայ։

CASSIO.
Հեթանոսակա՛ն, անզգա՛մ սրիկայ։

LODOVICO.
Ահա մի այլ թուղթ՝ լի գանգատներով, Որ գտնուած է նոյն գրպանի մէջ, Եւ որ Ռոդրիգոն, ինչպէս թւում է. Ուզել է յանձնել այս նզովեալին։ Բայց այդ միջոցին պէտք է սա յանկարծ ներս մտած լինի Եւ նրան համոզած։

OTHELLO.
Ա՛յ դու չարագործ։ Բայց, Կասսիո, ինչպէ՞ս այն թաշկինակը, որ իմ կնոջն էր, Ընկաւ քո ձեռքը։

CASSIO.
Իմ սենեակի մէջ գտայ պատահմամբ։ Եւ այս րոպէիս նա խոստովանեց, Թէ ինքն էր դիտմամբ վար ձգել այնտեղ մի յատուկ մտքով, Որ եւ կատարուեց իր ուզածի պէս։

OTHELLO.
Օ՜, ես՝ տխմա՛րս, տխմա՛րս, տխմա՛րս։ .

CASSIO.
Բացի դրանից, Ռոդրիգոն սրան այս նամակի մէջ յանդիմանում է, Թէ սա է դրդել նրան, որ ինձ հետ պահականոցում Խռովութիւն սարքի, որ պատճառ դարձաւ իմ արտաքսուելուն։ Եւ մի քիչ առաջ ինքը՝ Ռոդրիգոն, Որ երկար ատեն մեռած էր թւում, սկսեց խօսել. Ասաց՝ Եագոն է նրան վէրք տուել, Եւ Եագոն ինքն է նրան գրգռել։

LODOVICO.
[To Othello.] Պէտք է դուք այժմ թողնէք այս տունը եւ մեզ հետեւէք։ Ձեր իշխանութիւնը եւ ձեր պաշտօնը ետ է առնուած։ Կասսիոն է կղզու կառավարիչը։ Գալով այս շանը, եթէ հնարուած մի չարչարանք կայ, Որ երկար տանջի, բայց շուտ չսպանի, Սրա համար է։ Իսկ դուք կը մնաք մեր բանտարկեալը, Մինչ Վենետիկի պետութեան առաջ ձեր մեղքի մասին Զեկուցում տրուի։ Եկէք, տարէք սրան։

OTHELLO.
Կամա՛ց. երկու բառ, քանի այստեղ էք։ Ես պետութեանը ծառայել եմ քիչ, եւ նրանք գիտեն. Այս մասին՝ այսքան։ Այժմ աղաչում եմ, ձեր նամակներում, Երբ որ կը պատմէք այս աղէտալի պատահարները, Ներկայացրէք ինձ այնպէս, ինչպէս կամ։ Ո՛չ պակասեցրէք, ո՛չ աւելացրէք չարամտութեամբ։ Պէտք է, ուրեմն, դուք նկարագրէք մի մարդ, որ սիրեց Ոչ խոհեմաբար, այլ սաստիկ ուժգին։ Մի մարդ, որ դիւրաւ խանդոտացող չէր, Բայց երբ որ լարուեց, անչա՛փ մոլորուեց. Մի մարդ, որ նուաստ հնդիկի նման իր ձեռքով նետեց Մի ճոխ մարգարիտ, որ մենակ կ'արժէր իր բոլոր ցեղին. Մի խե՛ղճ մարդ, որի խոնջած աչքերը, Թէեւ անսովոր ջրակալուելու, Աւելի առատ արցունք են թափում, Քան Արաբիայի ծառերը՝ իրենց բուժարար խէժը։ Գրեցէք այսպէս եւ աւելացրէք, թէ Ալեպպոյում Մի փաթթոցաւոր չարագործ տաճիկ մի օր ծեծում էր Մի վենետիկցու եւ հայհոյում էր մեր պետութեանը, Իսկ ես բռնեցի այն թլպատուած շան կոկորդից եւ նրան Զարկեցի, այսպէս։

[Othello stabs himself.]

LODOVICO.
Օ՜, ի՜նչ արիւնոտ վերջաբան եղաւ։

GRAZIANO.
Փչացաւ բոլորն, ինչ որ ասացինք։

OTHELLO.
Քեզ համբուրեցի եւ սպանեցի։

[Falls upon Desdemona.]

OTHELLO [cont.]
Ինձ մնաց միայն՝ ինքս ինձ սպանել եւ քեզ համբուրել։ [Dies.]

CASSIO.
Վախենում էի, որ այսպէս լինէր, Բայց կարծում էի, թէ նա զէնք չունէր։ Մե՜ծ սրտի տէր էր։

LODOVICO.
[To Iago.] Սպարտացի շուն, Աւելի դաժան, քան թէ անձկութիւն, քան թէ սով եւ ծով, Տես այս անկողնի ողբալի բեռը. Քո արածն է այս։ Այս տեսարանը թոյն է աչքերի։ Ծածկեցէք վրան։ Գրացիանո, տունը դուք պահպանեցէք։ Գրաւեցէք մաւրի հարստութիւնը. Ձեզ է պատկանում իբրեւ ժառանգի։ Ձեզ, տէր կուսակալ. Մնում է պատժել այս դժոխային թշուառականին, Որոշել օրը, տեղն ու տանջանքը։ Օ՜, խստացրէք այդ։ Իսկ ես ուղղակի նաւ նստեմ գնամ, պատմեմ սենատին Ողբագին անցքը սրտով ողբագին։

[FINI.]

]0[

**TRANSLATION BY LILIT "BABA" YAGIAN (1978)**

